

**ԱՎԵՏԻՍ ԱՀԱՐՈՆՅԱՆ**

# Լեռներում

Երկու ընկեր էինք և գնում էինք սարերով, ձորերով, միևնույն հոգսն էր մեր երկուսիս էլ միաժամանակ մեր հարկերի տակից դուրս շպրտել: Այդ վնաս չուներ, գոնե ճանապարհն ապահով լիներ:

— Ա՜խ, մեր լեռները, հեռվից նայում ես՝ կապույտ, ալիքավոր բարձրություններ, խորհրդավոր ու սիրուն, որ կարծես թարթում են ու գրավում քեզ իրանց ծոցը. մոտենում ես, թաղվում ես ձորերում, կիրճերում, և զարզանդն է պատում քեզ: Լուռ սարսափը գալարվում է շուրջդ, պատում է կուրծքդ ու խեղդում, խեղդում: Ասում են լեռներում մարդ հեշտ ու ազատ է շնչում: Այստեղ կարծես օդ չկա:

— Օդ կա թե չկա՝ այդ միևնույն է, պետք է անցնենք, լավ է լուռ կաց և ձիուն զոռ տուր շուտ անցնենք, դատողության ժամանակ չէ:

Ես լուռ կացա, ընկերս իրավունք ուներ, բայց ձիս այն օրին չէր, որ զոռ տալով բան դուրս գար, դեռ նրա բանը լավ էր, մի կարճ հոնի փայտ, ծանր ու կոկ՝ ձեռքին էր, անդադար զարկում էր իր ձիու կողերին և առաջ ընկնում: Իմը՝ մի ողորմելի, վտիտ կենդանի, ապականդակների պատճառած ցավը տանում էր, բայց ընթացքը չէր փոխում, ես չարչարում էի նրան, նա չարչարում էր ինձ: Եվ գնում էինք, ճար չկար: Մեր մի կողմում բարձրանում էր Չարսալայ սարը և մյուս կողմում՝ Թաքեալթուն, երկուսի ոտների տակ՝ բլուրներ ու ձորեր, մութ կիրճեր ու ժայռեր, մացառներ ու աղբյուրներ, և մեր ճանապարհը, որ գալարվում էր նրանց միջից, ինչպես փախչող օձ, մերթ կորչում, մերթ մեզ հետ միասին բացվում էր արևի առաջ:

Կեսօր էր, և դեռ մենք որքան պիտի գնայինք՝ վտանգավոր տեղերից ազատվելու համար:

— Անիծվա՜ծ Բարդողյան շղթա, տեսնես ուրի՞շ աշխարհում էլ այսպիսի սարե՞ր կա՞ն:

— Սիրուն սարեր են:

— Սիրուն են, թող հիմա մի խումբ գլուխ կտրողներ առաջներս դուրս գան՝ նոր կիմանաս՝ սիրուն են, թե չէ:

— Էլի նրանք սիրուն կմնան, սարն ի՞նչ անի, որ ես ու դու հիմա այստեղ իրար մորթոտենք:

Ես լռեցի. նա դարձյալ իրավունք ուներ, անտառն ի՞նչ անի, որ այնտեղ գազաններ են բույն դնում: Հասանք այն տեղ, ուր լեռնաշղթան ասես ադամորդուն անցք տալու համար հնազանդ ձիու պես մեջքը ծռել է և թամբ ձևացրել:

— Տեսնո՞ւմ ես այն սև, մեծ ժայռը մեզանից դեպի ձախ,— ասաց ընկերս:

— Տեսնում եմ:

— Անունը գիտե՞ս:

— Ոչ:

— Նա կոչվում է Կոկորդ-կտրող:

— Ինչո՞ւ:

— Որովհետև շատ ինձ ու քեզ նման ողորմելիներ գլուխները թողել են այնտեղ:

— Անիծված ժայռ:

— Ժայռը մեղավոր չէ, մեզ էլ կարող են սպանել, բայց այդ ժայռը կմնա օրհնված:

Ընկերս դարձյալ իրավունք ուներ, ես գլուխս կախեցի, մի պահ լուռ մնացի մըտածմունքի մեջ ընկած:

— Որ այդպես է, ինչո՞ւ այստեղից ե-
կանք, չէ՞ որ դու ճանաչում ես այս լեռ-
ների բոլոր անկյունները:

— Ուրիշ ճանապարհ չկա, բայց ապա-
հով եղիր, ցերեկով այս տեղերում վտան-
գը միշտ մեծ չէ. դե, ցավի տեր ենք, պի-
տի անցնենք, մարդ էլ պատահի՝ մեր
ի՞նչը տանի:

— Զենք էլ չունենք:

Նա հետ նայեց մեղմ ժպտալով.

— Զենքով ի՞նչ կանեիր:

— Ի՞նչ կանեի, ես ի՞նչ գիտեմ, դե վը-
տանգավոր սարերում անզեն լավ չէ, գո-
նե մի խանչալ:

— Տանը խանչալ ունեի՞ր:

— Չէ:

— Երբևիցե ունեցե՞լ ես:

— Չէ, բայց կարելի էր ճարել:

— Ճարած խանչալով բան չի դուրս
գա, ձիուդ զոռ տուր, դու էլի ետ մնա-
ցիր:

Ես սկսում էի բարկանալ. ձիս չէր գը-
նում, չորս կողմերս սարսափելի, իսկ
նա քշում էր առաջ այնպիսի խաղաղու-
թյամբ, որ կարծես Կոկորդ-կտրող ժայ-
ռըն առաջներս չլինեին: Ինձ զայրացնում
էին մանավանդ նրա հանդարտ, անխռով
պատասխանները: Մի՞թե նա էլ չի վա-
խենում ինձ պես, էլ ի՞նչ կարիք կա ինձ
մոտ քաջ ձևանալ, մտածում էի ես՝ նա-
յելով նրա օրորվող թիկունքին, նրա
կարճ մահակին, որով անդադար խթում
էր ձիու կողերը: Նրա ձին էլ մի բան չէր,
բայց էլի իմից լավ էր: Մտքովս մի բան
անցավ, գնամ ասեմ, դե որ դու այդպես
քաջ ես, արի ձիերս փոխենք, դու ետևից
գնա, ես՝ առաջից, ես ետևից վախենում
եմ:

— Լսիր:

— Էլի ի՞նչ կա,— նա ետ նայեց: Տե-
սա այդ պարզ, խաղաղ դեմքը և ամա-
չեցի մտածածս հայտնել:

— Կեցիր, ես հասնեմ քեզ, գուցե ձիս
այդպես լավ գնա քոնի հետ կողք-կողքի:

Նա կանգ առավ: Ես հասա: Վրաս նա-
յեց փորձող հայացքով:

— Դու շա՞տ ես վախենում:

— Ի՞նչ կա չվախենալու, այս ժայռը,
այս սարերը:

— Դու հավատո՞ւմ ես բախտին:

— Իհարկե:

— Եթե հավատում ես, էլ ինչո՞ւ ես վա-
խենում, ինչ գրված է, այն էլ կկատար-
վի:

— Իրավունք ունես, բայց վախենում
եմ:

Ես լռեցի և սկսեցի մտածել նրա ասա-
ծի մասին, ճիշտ որ՝ թե մարդ իր ճա-
կատագրից ազատվել չի կարող, ինչո՞ւ
եմ վախենում:

— Դե, դու ասա, ինչո՞ւ եմ վախենում:

Հերթը նրանն էր մտածելու. նա մի
քանի րոպե լուռ մնաց, ձեռքը ճակատը
տարավ, շփեց, գլխարկը ուղղեց, ապա
անհանգիստ կերպով ձիուն խփեց փայ-
տով, ոտքերով շարժեց, որ շուտ գնա, ե-
րևի հարցս նրա համար էլ ծանր էր:

— Ինչո՞ւ ես վախենում,— ասաց նա
դանդաղությամբ,— երևի նրա համար,
**որ չես իմանում արդյոք ճակատիդ գըր-
վա՞ծն է կատարվում, թե չգրվածը:**

— Ես չեմ հասկանում, դու միշտ...

Վը՜զզ...

Մի գնդակ էր, որ Կոկորդ-կտրող սև
ժայռի կողմից եկավ ու անցավ մեր գլխի
վրայով:

Վը՜զզ անցավ երկրորդը:

— Հիմա հասկացա՞ր:

Ես էլ սիրտ չունեի նրան հասկանա-
լու. սարսափած նայեցի դեպի ժայռի
կողմը և տեսա, թե ինչպես վեր ցցվեց
նախ մի մարդու պատկեր, ապա երկրոր-
դը. քուրդ ավազակներ էին:

— Կա՛նգ առեք,— հրամայեցին նը-
րանք՝ մի զույգ հրացանի փողեր մեզ
ուղղած:

Մենք կանգ առանք, ճար չկար:

— Ցա՛ծ իջեք ձիերից, լսվեց երկրորդ
հրամանը:

Ընկերս մի րոպե մնաց մտազբաղ:

— Տեսնես քանի՞ հոգի են,— ասաց
ինձ կամացուկ:

— Երկուսն են, ես լավ տեսնում եմ,
դրանից մեզ ի՞նչ օգուտ. մի հոգի էլ լի-
ներ, այդ հրացանով մեզ...

— Դու էլի սկսեցիր:

— Ցած իջեք, թե չէ.— լսվեց նույն
հրամանն ավելի խիստ կերպով: Մենք
ցած իջանք:

— Այժմ թողեք ձիերը և հեռացեք դե-
պի մի կողմ:

— Ձիդ թող և հեռացիր,— ասաց ինձ
ընկերս կամացուկ:

— Իսկ դո՞ւ...

— Թող, ասում եմ:

Նա ինձ երբեք այդպես խիստ չէր հը-
րամայել. նրա միշտ բարի, մեղմ աչքե-
րում ես տեսա մի անհիրտ վճռականու-
թյուն, մի համառ շեշտ, թվում էր, որ ե-
թե էլի մի բան ասեմ, ինձ կխեղդի տեղն

ու տեղը. ես հնազանդվեցի:

Ընկերս իր ձիու սանձից բռնած մի քանի քայլ առաջացավ դեպի ավազակները:

— Նայեցեք,— ասաց,— ես խսպառ անզեն եմ. այս ձին կատաղի է, եթե թողնեմ կփախչի, ինչպես մրրիկ և ոչ ձեզ բաժին կլինի, ոչ էլ մեզ՝ ափսոս է, ցած եկեք ու տարեք, մեզ էլ թողեք մեր ճանապարհը ոտքով շարունակենք: Խեղճ մարդիկ ենք, ինչպես տեսնում եք, մեր ցավի համար չոլերն ընկած:

Ես նայում էի և չէի հասկանում, թե ի՞նչ է միտքը, քանի որ լավ գիտեի, որ այդ ձիու կողերը մահակով էլ ջարդեմ, դարձյալ փախչողը չէ, էլ ինչո՞ւ չի ձգում, որ մենք թողնենք ու գլուխ առնենք կորչենք շուտով:

Ավազակները մի երկու րոպե իրար հետ խորհրդակցեցին և ապա, հրացանները միշտ մեզ վրա սպառնալի կերպով բռնած, ցած իջան ժայռից և առաջացան դեպի ընկերս, որ անխռով կանգնած՝ սպասում էր նրանց:

Ահա նրանք բոլորովին մոտեցան, աներկյուղ ու վստահորեն:

Ընկերս շարունակում էր կանգնել անշարժ ու անխռով:

Ահա նրանցից առաջինը ձեռքը մեկնեց՝ ընկերոջս ձեռքից ձիու սանձը բռնելու: Ես նայում էի սրտատրոփ. մեկ էլ հանկարծ ընկերս ազատ ձեռքը բարձրացրեց և հոնի փայտով արագությամբ մի ծանր հարված հասցրեց քրդի մեկնըված ձեռքի դաստակին ու փշուր-փշուր արեց. սա ցավից մռնչաց, կծկվեց ու թևը բռնած գետին ընկավ. համարյա միևնույն վայրկյանին փայտի երկրորդ հարվածն իջավ մյուս քրդի գագաթին, որ նույնպես գլորվեց գետին՝ հրացանը ձեռքից թողնելով:

— Վազիր, ճչաց ընկերս: Ես մոտեցա: Մի վայրկյան հետո երկու ավազակները զինաթափ ու կապոտված մեր ոտների առաջն էին: Ես աչքերիս չէի հավատում:

— Մի քիչ ջուր թափիր այս ուշաթափված քրդի երեսին, թող ուշքի գա:

Հրամանը կատարեցի ինչպես ստրուկ: Թակարդում բռնված գազանների պես այս երկու քրդերն ընկած էին կանաչի վրա և ապուշ-ապուշ նայում էին մեզ: Նրանց հետ պատահած անակնկալը վեր էր բոլոր երևակայություններից և շշմեցրել էր այդ վայրենի գլուխները:

Ես նրանցից պակաս շփոթված չէի, նայում էի և չէի հասկանում, թե ինչ գործ ունեն այդ երկու գազանները մեր ճանապարհի վրա, այն աստիճան արագ կատարվեց այդ բոլորը:

— Ջուր, մրմնջաց ջարդված բազկի տերը առանց մեզ նայելու, կարծես ուրիշից էր սպասում մի քանի կաթիլ զովացուցիչ հեղուկ:

— Ջուր տուր սրան,— ասաց ընկերս: Ես վազեցի մոտակա աղբյուրը, գլխարկիս մեջ մի փոքր ջուր լցրեցի և բերի: Պապակած քուրդը խմեց, բայց շարունակում էր տնքալ ցավից:

— Թևդ շա՞տ է ցավում,— հարցրեց ընկերս:

Վիրավոր քուրդը նայեց նրա աչքերի մեջ, մի բան մռմռաց և գլուխը կախ գցեց, հարցը թողնելով անպատասխան:

— Ինչո՞ւ չես պատասխանում:

— Քեզ ի՞նչ, թե ցավում է:

— Ինձ ինչ թե ցավում է… ուզում էի կապել:

Քուրդը հեգնաբար նայեց նրան, չէր հավատում թշնամու խոսքերի անկեղծությանը:

— Կապիր սրա թևը, դարձավ ինձ ընկերս: Ես մոտեցա, պատռեցի քրդի շորերի մի մասը, վիրակապ շինեցի և պատեցի փշրված բազուկը: Մյուս ընկերը շարունակում էր նայել այդ բոլոր գործողությանը զսպված գազանի վայրենի աչքերով և կարծես ոչինչ չէր հասկանում:

—Ինչո՞ւ չեք սպանում մեզ, ասաց նա հանկարծ:

Ընկերս ժպտաց:

— Դուք մեր տեղը լինեիք, կսպանեի՞ք:

— Անպատճա՛ռ:

— Ինչո՞ւ եք սպանում անմեղներին:

— Ես ի՞նչ գիտեմ:

— Մենք ձեզ չենք սպանի:

— Հապա ի՞նչ կանեք:

— Մի բան կանենք: Վեր կաց, սիրելիս, հեծնենք ձիերը, արևն արդեն թեքվեց, իսկ մենք շատ ճանապարհ ունենք:

— Իսկ սրա՞նք:

Պատասխանի փոխարեն ընկերս արձակեց անզեն գերիներին:

— Գնացեք,— ասաց նա:

Քրդերը վեր կացան, իրար բռնած օրորվելով գնացին նորից դեպի Կոկորդկտրող ժայռը, իսկ մենք վերցրինք նրանց զենքերը, թռանք ձիերի մեջքին և քշեցինք, անցանք վտանգավոր վայրերից:



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Ասա այժմ, սիրելիս, գրվա՞ծը կատարվեց, թե չգրվածը:

— Չգիտեմ, պատասխանեցի, բայց ընկերս դարձավ իմ աչքում մի հսկա:

Դարձյալ գնում էինք, նա՝ առջևից, ես՝ ետևից, դարձյալ նրա հաղթ թիկունքն օրորվում էր, և հաստ մահակն անդադար շարժվում ձիու վրա, բայց ես էլ չէի վախենում. նա կարծես իր ձեռքում տանում էր իմ բախտը, և այդ բախտին էլ ոչ մի վտանգ չէր սպառնում: Նա երկար ժամանակ լուռ էր, ես էլ չէի համարձակվում խոսել:

— Էլի վախենո՞ւմ ես:

Ես լուռ էի:

— Այսպես է, սիրելիս, կյանքի մեծ ճանապարհին, կյանքի մեծ կռվի մեջ, թե խորտակվում ենք, ասում ենք գրվածը կատարվեց, թե հաղթող ենք հանդիսանում, վտանգից ազատվելով ասում ենք՝ ճակատներիս գրված չէր: Ինձ համար ճակատը լերկ ոսկոր է, ուր ոչինչ գրված չէ և չի կարող լինել:

1902 թ.

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Ներկայացնում ենք ԼՂՀՄ Ստեփանակերտի Ե. Չարենցի անվան № 7 միջն. դպրոցի գրական խմբակի սաների բանաստեղծությունները

## Մայր ու որդի

Ինչո՞ւ պիտի հույսս կորցնեմ,
Ինչո՞ւ պիտի ես մոռանամ,
Որ մայր ունեմ, ապրում է նա,
Ինչո՞ւ, ինչո՞ւ, ինչո՞ւ, ասա՛...
Հայոց աշխարհ, իմ մայր հզոր,
Ես քեզ հետ եմ, ես քեզ կգամ,
Ես քո որդին՝ վեհ Արցախն եմ,
Ընդունիր ինձ, մայր Հայաստան...

## Արցախի վիշտը

Տառապել եմ ես տարիներ
Խորթ մոր գրկում անիծյալ:
Խորթ մոր ձեռքին ես տանջվել եմ,
«Ախ» եմ քաշել անդադար:

Ինձ գողացել դարը խափան,
Տանջանք է միշտ ինձ տվել,
Իմ անունից ինձ պոկելով՝
«Սև այգի» է անվանել...

... Դե, հերիք է, ինձ ազատեք,
Կապանքներս դեն նետեք,
Ես ուզում եմ ճամփա բացել,
Մորս տաքուկ գիրկը նետվել...

ՌՈՒԶԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## Սպասում

Մայրդ իր գիրկն է բացել՝
Քեզ է սպասում տարիներ,
Սրտում կարոտ անթեղած,
Գրկում՝ հույսի ծաղիկներ...

## Իմ Հայաստան

Դու մի բուռ արտ, փոքրիկ ոստան,
Օ, իմ անուշ մա՛յր Հայաստան,
Մեր աղոթքն ես Մասիսն ի վեր,
Գեղախոյակ Անի ավեր,
Իմ կարոտի դու օթևան,
Դու պատիվն ես, հույսը մեր տան:
Քեզ զավակդ ո՞նց չսիրի,
Արցախի մայր, իմ Հայաստան...

ԱՐՄԻՆԵ ՍՏԵՓԱՆՅԱՆ

## Միացում

Ես կանչում եմ «Միացո՛ւմ»
Ու մտքիս մեջ արտասվում,
Ախր ինչո՞ւ շատերը
Մեր տենչը շատ են կարծում:

Եվ ինչո՞ւ չեն մտածում,
Որ չեն կիսի ազգը նույն,
Որ նույն վարդը աշխարհում
Չի ունենում երկու գույն:

Մենք մի ազգ ենք ու նույն մոր
Երկու որդին անբաժան,
Պիտի ապրենք միասին՝
Իրար թիկունք ու արժան...

ՆՈՒՆԵ ՊՈՂՈՍՅԱՆ

ՕՍԿԱՐ ՈՒԱՅԼԴ

# Սոխակը և վարդը

Թարգմանությունը
ՆՈՆՆԱ ԱԼԻԽԱՆՅԱՆԻ

Նկարները՝ ԼԱԼԱ ԴԵՎԿԱՆՑԻ

— Նա ասաց, որ կպարի ինձ հետ, եթե նրան տանեմ կարմիր վարդեր,— բացականչեց երիտասարդ Ուսանողը,—բայց իմ այգում չկա ոչ մի կարմիր վարդ:

Փշակաղնու վրա գտնվող իր բնից Սոխակը լսեց տղային և տերևների արանքից զարմացած դուրս նայեց:

— Ոչ մի կարմիր վարդ՝ իմ ամբողջ այգում,— վշտացավ տղան, և նրա գեղեցիկ աչքերն արցունքով լցվեցին:—Ա՜խ, որքան չնչին բաներից է երբեմն կախված երջանկությունը: Ես կարդացել եմ այն ամենը, ինչ գրել են իմաստուն մարդիկ, տիրացել եմ փիլիսոփայության բոլոր գաղտնիքներին, մինչդեռ իմ կյանքը խորտակված է այն պատճառով, որ չունեմ կարմիր վարդ:

— Ահա, վերջապես, իսկական սիրահար,— ասաց Սոխակը:— Գիշեր-գիշերի հետևից՝ առանց ճանաչելու, երգել եմ նրա մասին, գիշեր-գիշերի հետևից պատմել եմ նրա պատմությունը աստղերին և վերջապես տեսնում եմ նրան: Նրա մազերը հակինթի նման մուգ են, իսկ շուրթերը՝ իր երազանքի վարդի նման կարմիր, բայց կիրքը տղայի դեմքը դարձրել է փղոսկրի նման գունատ, և թախիծը իր կնիքն է դրել նրա ճակատին:

— Վաղը երեկոյան Արքայազնը պարահանդես է կազմակերպելու,— շշնջաց երիտասարդ Ուսանողը,— իմ սիրելին հրավիրված է: Նա կպարի ինձ հետ մինչև լուսաբաց, եթե տանեմ նրան կարմիր վարդ: Եթե կարմիր վարդ տանեմ, ես կըպահեմ նրան իմ գրկում, նա կհենի իր գլուխը ուսիս, և ես կսեղմեմ նրա ձեռքը: Բայց իմ այգում չկա ոչ մի կարմիր վարդ: Եվ ես ստիպված կնստեմ միայնակ, իսկ նա կանցնի իմ կողքով: Նա նույնիսկ ինձ վրա ուշադրություն չի դարձնի և իմ սիրտը վշտից կկոտրվի:

— Նա, իրոք, իսկական սիրահար է,— ասաց Սոխակը:— Այն, ինչի մասին ես երգում եմ, դրանից նա տառապում է, այն, ինչը ինձ համար հաճույք է, նրա համար տառապանք է: Հիրավի, սերը հրաշք է: Այն զմրուխտից թանկարժեք է և արևաքարից՝ սքանչելի: Մարգարիտներով և նռնաքարերով չի գնվի և ոչ էլ վաճառքի է հանվում շուկայում: Սերը անհնար է գնել վաճառականներից և ոչ էլ փոխել ոսկով:

— Երաժիշտները կնստեն իրենց վերնասրահում,— շարունակեց Ուսանողը,— և կնվագեն տավիղ ու ջութակ, և իմ սիրելին կպարի լարային գործիքների նվագակցությամբ: Նա կպարի այնքան թեթև, որ ոտքերը հատակին չեն դիպչի, և փայլուն հագուստներով պալատականներ կխմբվեն նրա շուրջը: Բայց ինձ հետ նա չի պարի, որովհետև ես չունեմ կարմիր վարդ:

Եվ երիտասարդը երեսնիվայր նետվեց խոտերի վրա, ձեռքերով ծածկեց դեմքը և արտասվեց:

— Ինչո՞ւ է նա լալիս,— հարցրեց փոքրիկ կանաչ Մողեսը, որը պոչը օդում թափահարելով վազեց տղայի կողքով:

— Իսկապես, ինչո՞ւ,— ասաց Թիթեռը, որը թևերը թափահարելով որսում էր արևի ճառագայթը:

— Իսկապես, ինչո՞ւ,— նուրբ շշնջոցով հարցրեց Մարգարտածաղիկը իր հարևանուհուն:

— Նա լալիս է կարմիր վարդի համար,— ասաց Սոխակը:

— Կարմիր վարդի համա՞ր,— բացականչեցին նրանք,— որքան ծիծաղելի է,— և փոքրիկ Մողեսը, որ փոքր-ինչ ցինիկ էր, անկեղծորեն ծիծաղեց:

Բայց Սոխակը հասկանում էր Ուսանողի վշտի գաղտնիքը, նա լուռ նստեց կաղնու վրա և սկսեց խորհել Սիրո առեղծվածի մասին:

Հանկարծ Սոխակը տարածեց իր շա-

գանակագույն թևերը և օդ բարձրացավ: Նա ստվերի նման անցավ պուրակի մի- ջով և ստվերի նման էլ սահեց այգու վը- րայով: Կանաչ բացատի մեջտեղում մի գեղեցիկ վարդի թուփ կար: Տեսնելուն պես Սոխակը նրա մոտ թռավ և նստեց ճյուղին:



— Տուր ինձ կարմիր վարդ,— խնդրեց Սոխակը,— և ես կերգեմ քեզ համար իմ ամենաքնքուշ երգը:

Բայց Թուփը թափահարեց գլուխը:

— Իմ վարդերը սպիտակ են,— պա- տասխանեց նա,— սպիտակ, ինչպես ծո- վի փրփուրը, և ավելի սպիտակ, քան լեռների վրայի ձյունը: Գնա իմ եղբոր մոտ, որն աճում է ծեր արևի ժամացույ- ցի մոտ, գուցե նա օգնի քեզ:

Եվ Սոխակը թռավ ծեր արևի ժամացույ- ցի կողքին աճող Վարդի թփի մոտ:

— Տուր ինձ կարմիր վարդ,— խնդրեց Սոխակը,— և ես կերգեմ քեզ համար իմ ամենաքնքուշ երգը:

Բայց Թուփը թափահարեց գլուխը:

— Իմ վարդերը դեղին են,— պատաս- խանեց նա,— դեղին, ինչպես սաթե գա- հին նստած ջրահարսի մազերը, և ավելի դեղին, քան Նարգիզը, որը ծաղկում է մարգագետնում: Գնա իմ եղբոր մոտ, ո-

րըն աճում է Ուսանողի պատուհանի տակ, ցույցե նա օգնի քեզ:

Եվ Սոխակը թռավ Ուսանողի պատուհանի տակ աճող վարդի թփի մոտ:

— Տուր ինձ կարմիր վարդ,— խնդրեց Սոխակը,— և ես կերգեմ քեզ համար իմ ամենաքնքուշ երգը:

Բայց Թուփը թափահարեց գլուխը:

— Իմ վարդերը կարմիր են,— պատասխանեց նա,— կարմիր, ինչպես աղավնու ոտքերը, և ավելի կարմիր, քան խոշոր մարջանե հովհարները, որ ծածանվում են օվկիանոսի ընդերքում: Բայց ձմեռը սառեցրել է իմ երակները, և սառնամանիքը ցրտահարել բողբոջներս, փոթորիկը կոտրել է իմ ճյուղերը, և այս ամբողջ տարին ես վարդ չեմ ունենալու:

— Գեթ մեկ կարմիր վարդ՝ ահա իմ խնդրածը, բացականչեց Սոխակը,— միայն մեկ կարմիր վարդ: Մի՞թե չկա միջոց այն ձեռք բերելու համար:

— Միջոց կա,— պատասխանեց Թուփը,— բայց դա այնքան սարսափելի է, որ ես չեմ համարձակվում ասել:

— Ասա ինձ,— խնդրեց Սոխակը,—ես չեմ վախենում:

— Եթե կարմիր վարդ ես ուզում,—ասաց Թուփը,— դու պետք լուսնի լույսի տակ ձայներից ինքդ ստեղծես այն երաժշտությունը և ներկես քո սեփական արյամբ: Դու պետք է երգես ինձ համար՝ կուրծքդ իմ փշին սեղմած: Ամբողջ գիշեր դու պետք է երգես ինձ համար, և փուշը պետք է խոցի քո սիրտը, և քո կենդանի արյունը պետք է հոսի իմ երակների միջով ու դառնա իմը:

— Մահը մեծ պարգև է կարմիր վարդի համար,— բացականչեց Սոխակը,— և Կյանքն էլ այնքան թանկ է բոլորի համար: Որքան հաճելի է նստել կանաչ անտառում և հիանալ Արևով ոսկե և Լուսնով՝ իր մարգարտե կառքում: Քաղցր է բալենու բուրմունքը, հարազատ են հովտում թաքնված զանգակածաղիկները և բլուրների վրա ծաղկող հավամրգին: Մինչդեռ Սերը կյանքից էլ թանկ է, և ի՞նչ է թռչունի սիրտը մարդկայինի սրտի հետ համեմատած:

Սոխակը տարածեց իր շագանակագույն թևերը և օդ բարձրացավ: Նա ստվերի նման սավառնեց այգու վրայով և ստվերի նման էլ սահեց պուրակի միջով:

Երիտասարդ Ուսանողը դեռ պառկած էր այնտեղ, որտեղ նրան թողել էր Սոխակը, և նրա գեղեցիկ աչքերում արցունքները դեռ չէին չորացել:

— Երջանիկ եղիր,— բացականչեց Սոխակը,— երջանիկ եղիր, դու կունենաս քո կարմիր վարդը: Ես այն կստեղծեմ լուսնի լույսի տակ, երաժշտության ձայներից և կներկեմ այն իմ սրտի արյամբ: Միակ բանը, որ ես քեզանից խնդրում եմ իբրև պարգև՝ եղիր հավատարիմ սիրահար, քանի որ որքան էլ իմաստուն է փիլիսոփայությունը, Սերը ավելի իմաստուն է, և որքան էլ հզոր է Իշխանությունը, այն ավելի զորեղ է: Սիրո թևերը բոցի գույն ունեն, և բոցով է ներկված նրա մարմինը: Նրա շուրթերը մեղրի նման քաղցր են, իսկ շնչառությունը խունկի հոտ ունի:

Ուսանողը խոտերի միջից վեր նայեց և ականջ դրեց, բայց չկարողացավ հասկանալ այն, ինչ ասում էր Սոխակը, քանի որ նա գիտեր միայն գրքերում գրվածը:

Բայց փշականղինին հասկացավ և տխրեց, որովհետև նա շատ էր սիրում այդ փոքրիկ Սոխակին, որն իր բույնը հյուսել էր իր ճյուղերի վրա:

— Երգիր ինձ համար քո վերջին երգը,— շշնջաց Կաղնին, ես ինձ շատ միայնակ կզգամ, երբ դու չլինես:

Եվ երբ Սոխակը երգեց Փշականղնու համար, նրա ձայնը նման էր արծաթյա սափորից թափվող ջրի քչքչոցին: Երբ Սոխակը վերջացրեց իր երգը, Ուսանողը վեր կացավ, գրպանից հանեց ծոցատետրը և մատիտը:

— Այս թռչունը ձևի վարպետ է,— ասաց տղան ինքնիրեն՝ պուրակով անցնելիս,— դա չի կարելի հերքել, բայց արդյո՞ք նա օժտված է զգացմունքով: Կարծում եմ՝ ոչ: Իրականում նա նման է արվեստագետների մեծ մասին՝ կատարելություն և ոչ մի անկեղծություն: Նա երբեք իրեն չի զոհաբերի ուրիշների համար: Նա մտածում է լոկ երաժշտության մասին, իսկ ամեն ոք գիտե, որ արվեստը եսասիրական է: Ի դեպ, պետք է ընդունել, որ նրա դայլայլի մեջ կան գեղեցիկ երանգներ: Ափսոս միայն, որ նրանցում ոչ մի իմաստ և ոչ մի օգտակարություն չկա:

Եվ Երիտասարդը գնաց իր սենյակը, պառկեց փոքրիկ ծղոտե ներքնակով մահճակալին և սկսեց մտածել իր սիրո մասին: Շուտով նա քնեց:

Երբ երկնքում շողաց լուսինը, Սոխակը թռավ Վարդի թփի մոտ և սեղմեց իր կուրծքը փշին: Ամբողջ գիշեր նա՝ կուրծքը փշին սեղմած, երգում էր, իսկ սառը բյուրեղյա լուսինը՝ դեմքը խոնարհած, ականջ էր դնում: Ամբողջ գիշեր նա երգում էր, և փուշը ավելի ու ավելի խորն էր մխրճվում նրա կուրծքը, և Սոխակի տաք արյունը հոսում էր:

Սկզբում Սոխակը երգեց տղայի և աղջըկա սրտերում ծագած սիրո մասին: Եվ Վարդի թփի ամենաբարձր ճյուղի վրա բացվեց մի հրաշալի վարդ՝ երգը երգի հետևից, թերթիկը թերթիկի հետևից: Սկզբում վարդը գունատ էր, ինչպես գետի վրա փռված մշուշը, գունատ, ինչպես վաղ առավոտը և արծաթե, ինչպես լուսաբացը: Ինչպես վարդի ստվերը արծաթյա հայելու մեջ, ինչպես վարդի ըստվերը փոքրիկ լճակում՝ այսպիսին էր ահա Թփի ամենաբարձր ճյուղին աճող վարդը:

Եվ Թուփը ձայն տվեց Սոխակին, որ նա ավելի մոտ սեղմվի փշին: «Ավելի մոտ, ավելի մոտ, փոքրիկ Սոխակ,— ասաց Թուփը,— թե չէ օրը կբացվի նախքան վարդի կարմրելը»:

Եվ Սոխակը ավելի մոտ հպվեց վարդի փշին, և ավելի ու ավելի ուժգին հընչեց նրա երգը:

Եվ վարդի թերթիկները ներկվեցին նուրբ վարդագույնով, ինչպես փեսացուի դեմքի շիկնանքը, երբ նա համբուրում է իր հարսնացուի շուրթերը:

Բայց փուշը չի թափանցել Սոխակի սիրտը, ուստի վարդը դեռ մնում էր սպիտակ, որովհետև միայն Սոխակի սրտի արյունը կարող էր ներկել վարդի սիրտը:

Եվ Թուփը ձայն տվեց Սոխակին, որ նա ավելի մոտ սեղմվի փշին: «Ավելի մոտ, ավելի մոտ, փոքրիկ Սոխակ,— ասաց Թուփը,— թե չէ օրը կբացվի նախքան վարդի կարմրելը»:

Եվ Սոխակը ավելի մոտ հպվեց փշին, փուշը դիպավ նրա սրտին և տանջանքի սուր ցավը խոցեց Սոխակին: Ավելի ու ավելի տանջալից էր դառնում ցավը, և ավելի ու ավելի ուժեղ էր հնչում Սոխակի երգը, քանի որ նա երգում էր այն Սիրո մասին, որն ավարտվում է Մահով, այն Սիրո, որը անգամ գերեզմանոցում չի մահանում:

Եվ սքանչելի վարդը դարձավ ալ կարմիր, ինչպես արևելքի բոսորագույն վերջալույսը:

Ալ կարմիր էր ծաղկեպսակը, սուտակի նման ալ կարմիր էր սիրտը:

Իսկ Սոխակի ձայնը թուլանում էր: Նրա թևիկները ջղաձգորեն թպրտացին, և մշուշը պատեց նրա աչքերը: Ավելի ու ավելի էր թուլանում նրա երգը, և Սոխակը զգում էր, որ ինչ-որ բան սեղմում է կոկորդը:

Ահա Սոխակը արձակեց իր վերջին դայլայլը: Գունատ Լուսինը լսեց այն, և մոռանալով լուսաբացի մասին, ավելի երկար մնաց երկնքում: Կարմիր վարդը լսեց այն, նա ամբողջ մարմնով սարսռաց զմայլանքից և իր թերթիկները բացեց առավոտյան սյուքին ընդառաջ: Արձագանքը դայլայլը տարավ դեպի լեռների ծիրանագույն քարայրները և արթնացրեց քնած հովիվներին:

Ձայնը գլորվեց գետի եղեգների միջով, որոնք տարան նրա հաղորդածը դեպի ծով:



— Նայիր, նայիր,— բացականչեց Թուփը,— վարդը արդեն կարմիր է,— բայց Սոխակը չպատասխանեց, քանի որ փուշը սրտում անշնչացած ընկած էր բարձր խոտերի վրա:

Կեսօրին Ուսանողը բացեց լուսամուտը և դուրս նայեց:

— Օ՜, ինչպիսի երջանկություն,— բացականչեց նա,— ահա կարմիր վարդ: Իմ ողջ կյանքում երբեք այսպիսի վարդ չեմ տեսել: Վարդն այնքան գեղեցիկ է, որ, համոզված եմ, ունի երկար լատինական անվանում:

Նա կռացավ և քաղեց վարդը:

Հետո Ուսանողը դրեց գլխարկը և վարդը ձեռքին վազեց Պրոֆեսորի տուն:

Պրոֆեսորի աղջիկը, շեմին նստած, երկնագույն մետաքսաթել էր փաթաթում կոճին, իսկ փոքրիկ շնիկը պառկած էր նրա ոտքերի մոտ:

— Դուք խոստացել եք, որ կպարեք ինձ հետ, եթե բերեմ ձեզ Կարմիր վարդ,— ասաց Ուսանողը:— Ահա աշխարհի ամենակարմիր վարդը: Այս երեկո դուք կկրեք այն ձեր կրծքի վրա, և երբ մենք պարենք, այն կպատմի, թե որքան շատ եմ Ձեզ սիրում:

Բայց աղջիկը դեմքը խոժոռեց:

— Կարծում եմ, որ չի սազի իմ զգեստին,— պատասխանեց նա,— և բացի այդ, Սենեկապետի զարմիկը ուղարկել է մի քանի բնական թանկարժեք քարեր, ամեն ոք գիտե, որ թանկարժեք քարը ծաղկից շատ ավելի թանկ է:

— Երդվում եմ, դուք շատ անշնորհակալ եք,— ասաց Ուսանողը բարկացած:

Նա նետեց վարդը փողոցի առվի մեջ, և սայլակառքի անիվը տրորեց այն:

— Անշնորհակա՜լ,— կրկնեց աղջիկը,— ահա թե ինչ կասեմ ձեզ, դուք շատ կոպիտ եք, և վերջապես, ո՞վ եք դուք: Ընդամենը մի Ուսանող: Ես համոզված եմ, որ դուք չունեք կոշիկների համար այնպիսի արծաթե ճարմանդներ, ինչպիսին ունի Սենեկապետի զարմիկը:

Աղջիկը վեր կացավ իր աթոռից և գնաց ներս:

— Ինչ անհեթեթ բան է Սերը,— բարձրաձայն խորհելով հեռացավ Ուսանողը:— Նրանում նույնիսկ կիսով չափ չկա այն օգտակարությունը, որն ունի Տրամաբանությունը, քանի որ Սերը ոչինչ չի ապացուցում: Այն միշտ խոստանում է անիրականալին, այն ստիպում է հավատալ անհավատալիին: Իրականում սերը ամենևին գործնական չէ, և քանի որ մենք ապրում ենք գործնական դարաշրջանում, ես կվերադառնամ փիլիսոփայությանը և կուսումնասիրեմ Մետաֆիզիկան:

Տղան վերադարձավ իր սենյակը, դուրս հանեց մի մեծ փոշոտ գիրք և սկսեց կարդալ:



**ԽԱՉԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ**

●●●

Անձրևի հետ շատ է հարմար,—
Քամին աշուն է շալակում,
Ես տխրում եմ, որ ինձ համար
Զվարճալի երգ կա պարկում:

Այս պատկերը թոչող մուժ է.
Թե մոտենամ՝ նա կփախչի,
Եվ ես ինչպե՞ս պարկը ուզեմ,—
Քամին Ձմեռ Պապի հո չի:

Սվսվում է,— ի՞նչ է ասում,—
Չեմ հասկանում նրա լեզուն,
Պարկը տարավ՝ դեռ դա քիչ է՝
Հետն էլ ինչ-որ բան է ուզում:

Բայց մնում է մի սփոփանք.
Կարդացել եմ մի առակում,
Որ հիմարը ինչ էլ ասի՝
Իմաստունը չի առարկում:

## Բանտարկյալ

Չորս պատերի մեջ քայլող դիակ եմ՝
Ջանձրույթի ոսկե շղթան ձեռքերիս,
Աշնան տերևներ գնամ հավաքեմ՝
Պատանքիս համար երփներանգ երիզ:

Գանգիս լպրծուն հատակի վրա
Ծեծված խոհեր են շնչահեղձ փռվել,
Բախվող ամպերի դեմքը հուրհրան
Իմ խռովքի դեմ չի կարող կռվել:

Ինչ ժլատ էին խնդուն պահերը,
Կյանքի շապիկը թարս էի հագել,
Մենակյացներին իմ հրավերը
Չխենթանալու ազնիվ փափագ էր:

Խանդից խուսափող օդը սրճահամ
Ուսուցանում է գուշակման դասեր,
Նա, ով ասում էր, թե կանմահանամ՝
Մեզ ի ապացույց ոչինչ չի հասել:

Ես արձաններին գլուխ եմ տալիս՝
Պատվանդանները դատարկ թողնելով,
Երանի ինձ էլ տեսնեն ժպտալիս
Այս սգահանդերձ պահերը խռով:



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

## Մեռած ծաղրածուն

Դու նման չես դիակի՝ քիթը երկար կոշիկով,
Եվ պոպոզով գլխարկիդ, որ կախ ճոճվում է հիմա,
Դեռ երեկ էր, որ ելար հանդիսանքով ու շուքով
Եվ ծիծաղի արցունքով մեզ խեղդեցիր անխնա:

Եվ մոռացանք մենք մի պահ գրպանները մեր դատարկ,
Լի հոգսերով մեր գանգը թռչնի փետուր էր դարձել:
Սիրելիի պես խաղաղ դու անցար մեր կրծքի տակ,
Եվ մեռան քո շուրթերին տրտմությունները մեր ծեր:

Ջահից ելնող կրակն էր կոկորդիդ մեջ չքանում,
Եվ աքաղաղը կարմիր ձու էր ածում շուրջը քո,
Եվ լրջախոհ մի գիտուն անվերջ պնդել էր ջանում՝
Թե սուտ էր այն, պարոններ, ինչ տեսանք այս երեկո:

Սև վարագույրը իջավ չարագուշակ շշուկով,
Բայց անհնար էր թվում՝ ծիծաղի մեջ տեսնել մահ...
Չէ, նման չես դիակի՝ քիթը երկար կոշիկով
Եվ պոպոզով գլխարկիդ, որ կախ ճոճվում է հիմա:

ԼԵՎՈՆ ԱՆԱՆՅԱՆ

# ՆՐԱՆՔ ՊԵՂՈՒՄ ԵՆ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ՈՍԿԻՆ

Լուսանկարները՝ ՍԵՐԳԵՅ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ապրել Կողբում և չսիրել բնությունը, չհմայվել ծննդավայրի կուսական գույնե-նիրհի մեջ:

Իրոք, իր տեսակի մեջ անմրցակից է սերը բնության հանդեպ, աննախադեպ մարդու ներաշխարհի վրա թողած հետևանքներով: Մի չպարտադրվող, բազմաշնորհ դաստիարակ է այն, որ մտերմիկ ապրումներ ու հույզեր է պարգևում: Իսկ այդ անկրկնելի զգացումները վերապրելու համար հարկավոր է անթերի իմանալ բնության լեզուն, ստույգ կողմնորոշվել նրա գաղտնիքների լաբիրինթոսում: Կողբի № 2 միջնակարգ դպրոցի աշակերտները սավածին հավելում են իրենց սահմանումը՝ ճանաչելով բնությունը հոգալ նրա պահպանության մա-



րով ու ձայներով, որ ձգում են մագնիսի պես,— պարզապես անհնար է: Արևաներկ հովիտներն ու մթին ծմակները, անտառի փեշերին շուլալվող գետակը իսկն ասածը շռայլ պարգևներ են և շվեյցարական բնապատկերի վերհուշն են արթնացնում մեր ժեռ ու քարոտ երկրամասում: Սակայն բնությունը սոսկ ծառն ու ծաղիկը չէ, վաղ գարնանը դեղնաբոց հրդեհվող հոնուտներն ու խաշամի տակից մեղմորեն խոխոջող աղբյուրները չեն: Բնությունը նաև հողի ընդերքն է, օտար աչքից ապահով թաքնված երկրի ամուր կեղևով, ուր Մենդելեևի պարբերական աղյուսակի տարրերի անձեռնմխելի թագավորությունն է՝ ընկղմված դարավոր սին: Պահպանել շրջակա բնական միջավայրը ոչ թե շրջանառության մեջ դրրված հերթական արդիաոճ կարգախոսի թելադրանքով, այլ ակտիվ ու գիտակից վերաբերմունքով: Տարիներ առաջ, երբ ձեռնամուխ եղան երկրաբանական խըմբակի ստեղծմանը, Արմինեն, Անարոնը, Արմենը, Արփինեն, մյուսները՝ թվով տասնհինգ հոգի, դեռ այնքան էլ հստակ չէին պատկերացնում անելիքները: Նախաձեռնության հեղինակը՝ աշխարհագրության ուսուցչուհի Գ. Իսրայելյանը, հմուտ ու բանիմաց մանկավարժ, առաջ քաշեց մի քանի սկզբունքային հարցադրումներ: Նախ՝ անհրաժեշտ է ճանաչել այն միջավայրը, որտեղ իրենք բնակ-

:վում են: Սակայն դա կլինի լոկ հայեցողական մոտեցում, եթե անտեսվեն գոյապահպանական խնդիրները: Չէ՞ որ մեր փոքրիկ հանրապետությունը կանգնած է էկոլոգիական աղետի շեմին: Բավական է նշել, որ Հայկական ԽՍՀ հինգ քաղաքներ՝ Երևանը, Կիրովականը, Հրազդանը, Ալավերդին և Արարատը, պատկանում են Խորհրդային Միության ամենաաղտոտված օդային ավազանն ունեցող բնակավայրերի թվին: Այս օրհասական վիճակագրությունը ճշմարիտ հայելին է բնապահպանական ոլորտում ցուցաբերվող մեր աններելի անհոգության ու տգիտության: Տասնամյակներ շարունակ





ուշադրությունից սպրդել են մեր գոյության կարևորագույն նախապայմանները՝ հողը, ջուրը, օդը: Իսկ բնությունը դաժանորեն պատժում է բախտորոշ սխալների համար, փակուղի տանելով հասարակական կյանքի առողջ ընթացքը: Խմբակի անդամների մտահոգության շառավիղներն արծարծում են օգտակար հանածոների անխնա գործածության շրջանակը: Այստեղ ևս մենք ոչ թե գեղագետի հայացքով ենք ընկալում բնական հարստությունները, այլ շահագործողի մոլի կրքով, զարկ տալով մետաղագործական արդյունաբերությանը: Գլխատելով մեր սարերն ու բլուրները, ոչ միայն ամայանալու խտանգի տակ ենք դընում մեր լեռնային երկիրը, այլև զրկում գալիք սերունդներին օգտակար հանածոներից, հարկադրելով նրանց թագավորել, քերթողահայր Խորենացու բառերով ասած, ավերակների վրա: Սիրել բնությունը, ճանաչել և պահպանել. այս երեք հիմնարար կողմնորոշիչներն են ընկած խմբակի գործունեության հիմքում:

Պետք է խոստովանել, որ սկզբնական շրջանում դժվարությունները ու խոչընդոտները շատ էին: Սակայն երեխաները թեպետ անվարժ, բայց հաստատուն սովորում էին բնության այբուբենը, տեսական գիտելիքները ճշտելով սեփական փորձառության պրիզմայով: Հետաքրքիր էին արշավները Վարդիգյուղ, Լիասի քար, Շղալի նավ, Ծակքար հանդամասերը, որոնց ընթացքում նրանք հաճախ էին առիթ ունենում ապրելու, հայտնագործելու բերկրանքը: Անմոռաց են հատկապես ամառային արշավները: Այսպես՝ անցած հունիսին երեխաները մեկնեցին Կարմիրգյուղ, ծանոթացան նոր բացված հանքախորշերին ու գետաբերուկներին, նմուշներ հավաքեցին, զրուցեցին երկրաբանների հետ, որոնք հետախուզական աշխատանքներ էին կատարում: Նրանք պատմեցին, թե ինչով է հարուստ տեղանքը, նվիրեցին մոլիբդենի գտածոներ: Նվիրատվություններով, փոխանակություններով, որոնումներով օր-օրի հա-

րըստանում է խմբակի հավաքածուն: Բացեցին մշտական գործող ցուցահանդես, որտեղ ցուցանմուշներ կան ո՛չ միայն Նոյեմբերյանի շրջանից: Աշակերտների ջանքերով ճշտվել է, որ շրջանում կան ֆիլզիտային տուֆի, բազալտի, գրանիտի, գիպսի, կրաքարի, մոլիբդենի հարուստ հանքավայրեր, որոնց ապարանմուշները նույնպես տեղ են գտել երկրաբանական անկյունում: Նրանք կազմակերպում են ցերեկույթներ, ձևավորում պատի թերթեր, եռանդուն մասնակցում են ամենատարբեր մրցույթների ու ստուգատեսների, շահելով պատվոգրեր ու գավաթներ: Հանրապետությունից լավատեղյակություն դրսևորելու համար վերջերս նրանք կըրկին խրախուսվեցին, իսկ Գագիկ Ազատյանն արժանացավ պատանի երկրաբանի կրծքանշանի: Խումբը մրցույթին ներկայացել էր վանակատի հազվագյուտ նըմուշով, որ գտել էին սարերում: Տաք վիճաբանություն ծագեց, քանի որ մասնագետների վկայությամբ, երկրորդ դեպքն էր, երբ Հայաստանում կանաչ գույնի վանակատ էր հայտնաբերվում: Երեխաները խոստացան կատարել տեղանքի մանրակրկիտ զննում, նոր նմուշներ հավաքել:

Երկրաբանական խմբակը պրոբլեմներ էլ ունի: Սուր կերպով ծառանում է փոխադրամիջոցի հարցը՝ մասնավորապես հեռավոր արշավների ժամանակ: Տակավին ապահովված չեն անհրաժեշտ գործիքներով, վրաններով, չեն բավականացնում ցուցադրման վահանակներն ու պահարանները: Սակայն երեխաները չեն վըհատվում, համբերատար սպասում են իրենց ժամին: Նրանք երազում են ստեղծել առանձին թանգարան, ուր ի մի կբերեն ողջ տնտեսությունը: Բարեբախտաբար դպրոցի տնօրինությունը լավ նախաձեռնությունները սատարելու ավանդույթներ է կուտակել և պատրաստակամ է ընդառաջելու պատանի բնասերների պահանջներին:

Երեխաները երազում են: Նրանք գիտեն, որ կարևորը մրցանակները չեն, մնայունը գեղեցիկի զգացումն է, որ շնորհում է շփումը բնության հետ, նաև այն գիտելիքները, որ ձեռք են բերում՝ ճանաչելով հայրենի եզերքը: Նրանց կանչում են ընդերքի խորախորհուրդ ծալքերը, ուր պատանի երկրաբաններին սպասում է ամենամեծ ավարը՝ իմացության անխառն ոսկու հայտնության հրաշքը:






**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՁՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# Դժվար ժամանակներ

Արշակ II թագավորն, ինչպես տեսանք, կարելին ու անկարելին էր անում Մեծ Հայքի ամբողջությունն ու անկախությունը պահպանելու համար: Եվ այդ պատճառով հայերն անընդհատ պատերազմում էին Սասանյան Պարսկաստանի դեմ: Առաջ, երբ Հռոմը և Պարսկաստանը հակամարտության մեջ էին, Հայաստանը հաճախ դրանից օգտվում էր, պահպանում իր խաղաղությունը և անկախությունը: Հակառակ կողմերից ամեն մեկն ուզում էր Հայաստանին իր կողմը գրավել, և դա հայոց հմուտ ղեկավարները, մանավանդ Արշակ II-ը, օգտագործում էին՝ մերթ մեկին, մերթ մյուսին խոստումներ տալով: Իհարկե, Հռոմն էլ, Պարսկաստանն էլ նպատակ ունեին նվաճել Հայաստանը կամ իրար մեջ բաժանել երկիրը, սակայն նրանց հակամարտությունը Հառաջավոր-արևմտյան Ասիայի տարածքում նաև ուժերի հավասարակշռություն էր ըստեղծում, որից շահում էր Հայքը: Մինչդեռ Հռոմի կայսր Հովիանոսի 363 թվականին Պարսկաստանի հետ կնքած 30-ամյա պայմանագիրը, որի համաձայն Հռոմը Պարսկաստանին գործելու լիակատար ազատություն էր տալիս, խախտեց ուժերի հավասարակշռությունը: Պարսկաստանն ու Հայաստանը մնացին դեմհանդիման առանց մի ուրիշի հնարավոր միջամտության: Այդ էր հայ-պարսկական երկարատև, անընդհատ պատերազմների պատճառը:

Բոլոր այդ պատերազմներում հաղթում էր Հայաստանը, Մեծ Հայքը պահպանում էր իր անկախությունը: Բայց պատերազմը պատերազմ է: Մարդիկ հոգնում են անընդհատ, չվերջացող լարվածությունից ու արյունահեղություններից: Ընտանիքները կորցնում էին իրենց հարազատներին: Այս իրողությունն իր դերը կատարեց Հայաստանում: Հնարավոր է, որ այն իր դերը կատարած լինի նաև Պարսկաստանում: Փավստոսը գրում է, որ «Երկու կողմերն էլ ձանձրացան, հոգնեցին»: Դեպքերն այնպես զարգացան, որ կարևոր դարձավ նյարդերի ամրությունը: Հայ նախարարների մի մասի նյարդերը թույլ գտնվեցին: Մանավանդ Արշակունիներից նախքան այդ էլ դժգոհ նախարարները Արշակ II-ին վնասած լինելու համար դավաճանեցին իրենց պետությանը: Աղձնիքի, Նուշիրականի, Գուգարքի բդեշխները, ինչպես և Կողբի, Տմորիքի, Արցախի, Կորդիքի նախարարները անցան Շապուհի կողմը: Իսկ Արշակունիներից որոշ իշխաններ, Ծոփքի բդեշխը, Աղձնիքի նախարարը և ուրիշներ անցան Հռոմի կողմը և գնացին կայսեր դուռը: Որոշ նախարարներ էլ տատանման մեջ էին: Սրանով խախտվեց Հայաստանի միասնությունը, և հայոց ուժը պակասեց, երկիրը թուլացավ: Իսկ անմիասնական, պառակտված երկիրը, ինչպես գիտենք, արտաքին թշնամուն դիմադրել չի կարողանում:

Պարսիկների կողմն անցած նախարարներին գլխավորում էին Մեհրուժան Արծրունին և Վահան Մամիկոնյանը, որոնք քրիստոնեությունն ուրացել էին և ընդունել պարսից զրադաշտական կրոնը: Իսկ Շապուհ II-ի գլխավոր նպատակն էր Հայաստանում վերացնել Արշակունիների թագավորական տունը, Հայքը վեր ածել Պարսկաստանին հպատակ մի քանի մարզպանության: Շապուհը, ըստ Խորենացու, Մեհրուժան Արծրունուն խոստացել էր հայոց թագավոր դարձնել:

Տատանվող նախարարները գնում են Ներսես կաթողիկոսի մոտ և գանգատվում Արշակից: Փավստոսը պատմում է, որ նախարարները Ներսեսին դիմել են այսպես. «Մենք ոչ մի տարի պատերազմից հանգիստ չենք ունեցել, շարունակ մեր երեսների քրտինքը սրբել ենք սրերով, նետերով, նիզակների տեգերով: Մենք այլևս չենք կարող դիմանալ, ոչ էլ կարող ենք դուրս գալ պատերազմի. ավելի լավ է, որ մենք էլ հպատակվենք պարսից թագավորին, ինչպես արին մեր ընկերները, որոնք թողեցին Արշակ թագավորին ու գնացին պարսից թագավորի մոտ: Մենք էլ նրանց պես պիտի անենք, որովհետև այլևս չենք կարող կռվել»:

Նախարարներն իմանալով, որ Ներսես կաթողիկոսը վատ հարաբերությունների մեջ է Արշակ թագավորի հետ, կարծում էին, թե իրենց որոշումը կպաշտպանի: Բայց իզուր չէ, որ ժողովուրդը Ներսեսին Մեծ էր անվանել: Նա խստորեն հանդիմանում է նախարարներին: Ասում է, որ թեև Արշակունիները վատ գործեր շատ են արել, բայց նաև նախարարական շատ տներ նրանք են հաստատել ու ամրացրել: Եվ հետո՝ ինչպիսին էլ որ լինի Արշակը, նա հայոց թագավորն է, հայկական պետության ղեկավարը, ինչպե՞ս կարելի է նրան պահին լքել սեփական թագավորին, անցնել հակառակորդի կողմը: Եվ ինչպե՞ս կարելի է թողնել քրիստոնեական սուրբ կրոնն ու ընդունել պարսից մազդեականությունը (զրադաշտականությունը): «Արշակը թեկուզ բյուր անգամ էլ չար լինի, սակայն աստվածասեր է, որքան էլ մեղավոր լինի, սակայն ձեր թագավորն է»,— ասում է Ներսես Մեծը նախարարներին:

Բայց նախարարները խուլ մնացին Մեծըն Ներսեսի իմաստուն խոսքերին:

Այնուհետև այդ նախարարները համոզում են մյուսներին, նաև հայոց զորքին, որ հրաժարվեն պատերազմելուց և ստիպեն Արշակին գնալ Շապուհի մոտ ու հաշտվել: Ուրիշ նախարարներ էլ Շապուհին էին համոզում իր մոտ՝ Տիզբոն կանչել Արշակին: Արշակն իմանալով Շապուհի նենգ քաղաքականությունը, լավ գիտեր, որ պարսից թագավորն ուզում է իրեն ծուղակը գցել, ուստի մերժում էր թե՛ նախարարների հորդորները, թե՛ Շապուհի հրավերները: Բայց նախարարները, ինչպես Փավստոսն է գրում, «ստիպեցին, բռնադատեցին, շտապեցրին իրենց Արշակ թագավորին, որ վեր կենա, գնա, ներկայանա պարսից Շապուհ թագավորին»:

Շապուհը, որպեսզի հավատացնի Արշակին, թե Պարսկաստանում նրան որևէ վտանգ չի սպառնում, իբրև Սասանյանների գերագույն երդում, Արշակին ուղարկեց աղ՝ իր վարազապատկեր մատանիով կնքված:

Արշակ թագավորը ստիպված, չուզելով

367 թ. մեկնեց Պարսկաստան, Սասանյանների Տիզբոն մայրաքաղաքը՝ իր զորավար Վասակ Մամիկոնյանի հետ: Շապուհը նրանց կալանավորեց: Թեև անմիջապես բանտ չնետեց, բայց խիստ հսկողության տակ էր պահում իր պալատում: Նա ուզում էր փորձել, թե առաջիկայում որքա՞ն կարելի է վստահել Արշակին, ի՞նչ զիջումներ նա կարող է անել:

Փավստոս Բուզանդը մանրամասն պատմում է նաև հետագա իրադարձությունների մասին: Մեր ժամանակների որոշ գիտնականներ Փավստոսի «Հայոց պատմության» այս մասերը հայտարարեցին ժողովրդական վեպ, հեքիաթ: Մինչդեռ ամեն մի լուրջ ընթերցող պարզ կարող է տեսնել, որ դա արժանահավատ պատմություն է՝ գրված ժամանակակցի ձեռքով և նրանում ներկայացված գրեթե բոլոր դեպքերն իրողություններ են եղել: Բոլոր հին պատմիչների նման Փավստոսն էլ որոշ հրաշապատում երանգ է տվել առանձին դեպքերի նկարագրությանը կամ երբեմն օգտվել է իրական դեպքերի մասին ժողովրդի մեջ եղած խոսակցություններից: Պարզ է, որ Փավստոսը չէր կարող իր ժամանակի բոլոր դեպքերին ականատես լինել կամ մոտիկից ծանոթ: Եվ ուրիշ դեպքերի մասին նա տեղեկություններ է քաղել ժողովրդի պատմածներից, իսկ ժողովուրդը միշտ սիրում է չափազանցումներ, դեպքերին առասպելական բնույթ տալ:

Մեզ չեն հասել պարսից արքունիքում Արշակի և Շապուհի վարած բանակցությունների գրանցումները: Փավստոսն էլ ներկա չի եղել Շապուհի պալատում, որ լսեր դրանք: Նա դրանց մասին իմացել է նախարարներից ու ժողովրդից և իր գրքում բերել ինչ-որ լսել է: Այդ պատմությունն առասպելանման է, բայց իր մեջ պարունակում է բանակցությունների ոգու մասին ճիշտ տեղեկություն:

Փավստոսը պատմում է, որ Շապուհը կանչում է իր բախտագուշակներին, աստղագուշակներին և հարցնում, թե ինչպե՞ս որոշի Արշակի մտքինը՝ ի՞նչ դիրք է նա գրավելու իր նկատմամբ, երբ վերադառնա Հայաստան: Գուշակները խորհուրդ են տալիս Հայաստանից բերել երկու բեռ հող և մի ամանով ջուր: Շապուհի կացարանի մի կեսին պետք է շաղ տան Հայաստանից բերված հողը և վրան ցանեն Հայաստանից բերված ջուրը (հավանաբար, խոսքը Շապուհի վրանի մասին է՝ հողե հատակով): Ապա Շապուհը Արշակի հետ պետք է քայլի թե՛ պարսկական, թե՛ հայկական հողի վրա և խոսեցնի հայոց թագավորին:

Շապուհն այդպես էլ անում է: Պարսկական հողի վրա Արշակը խեղճանում է, զղջում իր ըմբոստության համար, ներողություն խնդրում, բայց հենց որ սկսում են քայլել հայկական հողի վրա, Արշակը դառնում է համարձակ, Շապուհին ասում է՝ «Հեռու ինձնից, չարագործ ծառա»: Այսպես շատ անգամ նրանք քայլում են հայկական ու պարսկական հողերի վրա, և միշտ կրկնվում է նույնը. պարսից հողի վրա Արշակը խեղճանում է, հայոց հողի վրա դառնում է անվախ:

Սրանից մենք եզրակացնում ենք, որ Արշակն ու Շապուհը երկար բանակցել են, Շապուհը ջանացել է Արշակին հնազանդեցնել, իսկ հայոց թագավորը թեև խորամանկել է, բայց Շապուհը պարզ հասկացել է, որ Արշակը հնազանդվող չէ:

Այս հասկանալով Շապուհը հայոց թագավորին շղթայում է և աքսորում հեռավոր Խուժաստանի Անհուշ (Անդմըշ) բերդը: Երբ Վասակ Մամիկոնյանին են բերում Շապուհի առաջ, պարսից թագավորը նրան ասում է. «Աղվես, այդ դո՞ւ էիր այն խանգարիչը, որ այսքան տարի մեզ չարչարեցիր, դո՞ւ էիր, որ այսքան տարի կոտորում էիր արիներին, հիմա ինչպե՞ս ես, որ քեզ աղվեսի մահով սպանեմ» (պարսիկներին կոչում էին նաև արիներ):

Վասակը պատասխանում է. «Այժմ դու ինձ տեսնելով մարմնով փոքր, իմ մեծության չափը չզգացի ր, որովհետև մինչև այժմ ես քեզ համար առյուծ էի, իսկ այժմ աղվե՞ս: Բայց մինչ ես Վասակն էի, ես հսկա էի, մի ոտքս մի լեռան վրա էր, մյուս ոտքս մի այլ լեռան վրա, երբ աջ ոտքիս վրա էի հենվում, աջ լեռն էի գետին տանում, երբ ձախ ոտքիս վրա էի հենվում, ձախ լեռն էի գետին տանում»: Շապուհը հարցնում է, թե այդ ի՞նչ լեռների մասին է խոսքը: Վասակը պատասխանում է, որ մի լեռը Շապուհն էր, մյուսը Հռոմի կայսրը: Ինչպես տեսնում ենք, Վասակ Մամիկոնյանը միանգամայն ճիշտ է բնորոշում իր դերը՝ նա մերթ Պարսկաստանին էր հաղթում, մերթ Հռոմին (Բյուզանդիային), որից որ Հայաստանին վտանգ էր սպառնում:

(շարունակելի)



ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

# ԱՌՅՈՒԾԸ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Եղվարդ. Աստվածածին եկեղեցու բարձրաքանդակ, 1321—1328 թթ.

Երիտասարդ գիտնականներ Պ. Սաֆյանը և Գր. Կարախանյանը 1966 թվականին մամուլում շատ հետաքրքրական նյութ հրապարակեցին այն մասին, որ իրենք Սիսիանի Ուղտասար կոչվող լեռան բարձունքում հայտնաբերել են հին և նոր քարի դարերի մարդկանց գծած հարյուրավոր ժայռապատկերներ: Դրանց մեջ հեղինակները գտել են նաև քարին փորագրված առյուծի նկար: Քանի որ այդ նկարները 7—10 հազար տարվա հնություն ունեն, ուրեմն Ուղտասարի քանդակներն ամենահին նյութական ապացույցն են՝ վկան այն բանի, որ Զանգեզուրի նախաբնիկը նույնպես ծանոթ է եղել այդ գազանին:

Սիսիանի շրջանն իր խիստ կլիմայով չէր կարող առյուծներին հարմար բնակավայր լինել. ուստի այն ժամանակվա մարդը այդ կենդանուն կարող էր հանդիպել Զանգեզուրի հարավում, Որոտանի, Հագարու ստորին հոսանքի մեղմ հովիտներում, ուր այն ժամանակվա խաշնարած ցեղերը պետք է որ ձմեռային արոտի տանեին իրենց հոտերը:

Այսպես թե այնպես՝ այդ ժայռապատկերները խոսում են այն մասին, որ հնում առյուծ է եղել նաև Սյունյաց աշխարհում: Այդ բանն ապացուցող մի այլ փաստ, որ արդեն վերաբերում է ավելի ուշ շրջանի բրոնզե դարին: Ուշադրության է արժանի առյուծի բրոնզե արձանիկը, որը գտնվել է Ղափանի շրջանի «Սյունիք» սովխոզի տարածքում: Արձանիկն ունի 5,5 կգ քաշ, 20 սմ լայնություն և 18 սմ բարձրություն: Այն վերաբերում է 14—12 դարերին (մ. թ. ա.): Ըստ պատմական տվյալների՝ Զանգեզուրն այն ժամանակ կրել է Ուրարտական պետության մշակութային ազդեցությունը:

Արձանիկը, որ ապացուցում է, թե այդ հզոր գազանը մեծարվել, պաշտվել է Զանգեզուրի նախաբնիկների կողմից, ցուցադրված է Գորիսի գավառագիտական թանգարանում:

Ուրարտական շրջանում արդեն ակնհայտ է առյուծի պաշտամունքը: Բավական է հիշատակել միայն այն, որ այդ

շրջանում թագավորական գլանակնիքների վրա հաճախ էին քանդակվում առյուծներ: Դրանցից երկուսի պատկերները հրապարակված են Պիոտրովսկու «Ուրարտու» գրքում: Կարմիր բլուրում գտնըված քարե փոքրիկ մի կնիքի վրա ևս քանդակված է առյուծ, որ պառկել է աջ կողքի վրա: Այն, որ ուրարտական շըրջանի արվեստներում կենտրոնական տեղը գրավում է առյուծի պատկերումը (բարձրաքանդակներին, գլանակնիքների վրա, արքայական գահերին, վահաններին և այլուր) պերճախոս վկայությունն է այն բանի, որ այդ գազանն այն ժամանակ սովորական է եղել մեր բնաշխարհում:

Գանք ետուրարտական շրջանի նյութերին:

Որ Հայաստանի հարավային նահանգներում հնում առյուծներ են եղել, երևում է նաև 5-րդ դարի պատմիչ Փավստոս Բուզանդի «Շաղիտա» ավանդությունից: Ահա այդ առասպելը. «Երկու անապատական կրոնավորներ կային, որոնք նըստում էին լեռներում, մեկի անունը Շաղիտա, որ ազգով ասորի էր և նստում էր Առյուծ լեռներում... Այս Շաղիտան... Սուրբ Ներսեսի վախճանվելուց հետո Կորդուք գավառը գնաց, նշաններ ու սըքանչելիքներ էր կատարում, բնակվում էր առյուծների մեջ և ավելի քան քսան առյուծ շարունակ շրջում էին նրա հետ: Պատահում էր, որ երբ գազանների մի տեղը ցավում էր, գալիս պատում էին նրա շուրջը, քաշքշում էին նրան և նշաններով հասկացնում, որ բժշկե: Մի անգամ մի մեծ առյուծի թաթը եղեգ էր խրվել. առյուծը եկավ սուրբ Շաղիտայի մոտ՝ նրա նստած լեռը, և մարդու նման թաթը բարձրացնելով՝ ցույց էր տալիս վերքը և նշանացի խնդրում էր իրեն բժշկել: Իսկ սուրբ Շաղիտան եղեգը քաշում հանում էր, որ խրվել էր վերքի մեջ. թքում էր վերքի վրա և իր գլխի թաշկինակով պատում էր առյուծի թաթն ու բժշկում»: (Փավստոս Բուզանդ, Հայոց պատմություն, 5-րդ դպրություն, գլ. ԻԶ, էջ 260—261):

Ոչ միայն այս առասպելն է հաստատում առյուծների գոյությունը հին Հայաստանի Կորդուք գավառում, այլև հենց լեռան Առյուծ անունից երևում է, որ այն հեռավոր ժամանակներում առյուծներ են վխտալիս եղել այդ վայրերում, ինչպես մեզ մոտ Օձասար կոչվում են այն սարերը (Արտաշատի և Ապրակունիսի շրջաններում), ուր առանձնապես առատ են այդ սողունները:

«Սասունցի Դավիթ» էպոսը նույնպես հաստատում է, որ հնում առյուծներ կային Հայաստանի հարավային մարզերում: Կարելի է նույնիսկ կարծել, որ միջին դարերում առյուծ եղել է հենց Սասունում, որովհետև Քեռի Թորոսը Մհերին գանգատվում է, թե «Երբ սար չութի էրթանք՝ մեզ կուլ կը տան»: Եվ, վերջապես, չէ՞ որ մանուկ Դավիթը սարերից, ձորերից վայրի կենդանիներ ու գազան-



Պտղնավանք. Առյուծ, հարավային ճակատի բարձրաքանդակ



Ավետարան. 1066 թ., Մարկոսի ավետարանի անվանաթերթը



ներ է հավաքում, խառնում է գառների հոտին ու քշում Սասուն: Այդ գազանների մեջ հիշատակվում է նաև առյուծը:

Հին շրջանի մտածողներից մեկը կենսաբանական կարգի որոշ դիտողություններ է գրի առել առյուծների վերաբերյալ: Խոսքս հայ փիլիսոփա Բարսեղ Կեսարացու մասին է, որը խելացի կերպով տալիս է, թե ինչպես յուրաքանչյուր կենդանու ֆիզիկական կառուցվածքը համապատասխանում է նրա միջավայրի կենսապայմաններին և սնվելու եղանակին: Այսպես՝ գիշատիչ գազանները (դրանց թվում նաև առյուծը), որ միշտ հում միս են ուտում, «դրան համապատասխան էլ սուր-սուր ժանիքներ ունեն»: Ուղտը երկար վիզ ունի, որովհետև ունի նաև երկար ոտքեր, բարձր մարմին, ուրեմն դունչը կերին հասցնելու, կռանալու համար անհրաժեշտ է, որ վիզը երկար լինի: Իսկ առյուծը, վագրը և նրանց նմանները գետնից արածելու կարիք չունեն, ուստի և երկար պարանոցի կարիք չունեն, նրանց պարանոցն էլ կարճ է:

Կարծիք կա, թե ուրարտական տաճարներում ընտելացված առյուծներ են պահել: Առյուծի ընտելանալու հնարավորության մասին գրել է նաև վաղ միջնադարի հայ մտածող Եզնիկ Կողբացին: Մի այլ մեծահամբավ հայ մտածող՝ Դավիթ Անհաղթը, իր «Սահմանք իմաստասիրության» փիլիսոփայական աշխատության մեջ առյուծին բնորոշում է որպես «արի» կենդանի:

Հարց է առաջանում. եթե հայկական բնաշխարհում առյուծ չկար (քանի որ ոսկորներ չեն գտնվել), հապա ինչպե՞ս են հին դարերի մտածողները ճիշտ բնորոշումներ տվել նրա վարքին:

Եվ ինչպե՞ս են առյուծներին իրենց բնորոշ տեսքով և «բնավորությամբ» կերտել արծաթի, բրոնզի, քարի վրա, նկարել մագաղաթյա ձեռագրերում:

Հայկական քանդակագործական արվեստի մեջ ամենաներբակերտը և ամենանշանավորը այն առյուծն է, որ կերտված է հայոց Պակոր Յ-րդ թագավորի անձնական գավաթի վրա: Այդ գավաթը գտնվել է Մայկոպի Դախովսկայա գյուղի մ ո տ ե ր ք ու մ՝ 1935—1936 թ վ ականներին կատարված պեղումների ժամանակ: Գավաթը մաքուր արծաթից է, բարձրությունը 65 մմ, փաթը 350 մմ, քաշը 348,5 գ: Վրան հունարեն փորագրված է՝ «Պակոր թագավորից»: Բ. Լունինը, ուսումնասիրելով գավաթը, գտել է, որ այն պատկանում է Պակոր Յ-րդ հայոց թագավորին, ուրեմն և գավաթը մեր թվականության 2-րդ դարի գործ է: Գավաթի վրա թատերական տեսարաններ են փորագրված և երկնամբարձ ու բարակիրան ծառեր, որոնց Լունինը կիպարիսներ է համարում, մինչդեռ դրանք իսկական հայկական բարդիներ են, որոնց տակ վարպետորեն պատկերված է մի հաղթանդամ, մեծագլուխ արու առյուծ, որ ինչ-որ պատճառով զգուշությամբ ետ է ընկրկում:

Ավելի ուշ շրջանի գործերից կարելի է



Առյուծ Եղեգնաձորից «Ինտուրիստ» հյուրանոց, Երևան, Նորք



Ճաշոց. 1286 թ. անվանաթերթ,



Արենի, Աստվածածին եկեղեցու բարձրաքանդակ:

հիշատակել հետևյալները: Պռոշյանների ընդհատակյա հանգստարանի (դամբարան) ճակատին տոհմի գերբից բացի, քարի վրա երկու էգ առյուծների բարձրաքանդակներ են կերտված, պահապան գամփռերի նման վզնոցներով կապված իշխանական դարպասին, աներկմիտ նշան այն բանի, որ այդ գազանները Պռոշյանների տոհմը պաշտպանող տոտեմներ են:

Ահա Արծրունի Գագիկ թագավորը քեֆ է անում այգում, և դա երևում է նրանից, որ նստել է ծալապատիկ, գավաթը վեր բարձրացրած: Մի պալատական խաղող է բերում նրան, մի այլ կին ձեռքը մեկնել է որթատունկից ողկույզ պոկելու, ըստ երևույթին դարձյալ տիրոջը տանելու համար, բայց խաղողը ձեռքին մնացել է քարացած, որովհետև հետևից երախը բաց մի արու առյուծ հարձակվում է վրան: Այս հիանալի բարձրաքանդակ պատկերը կերտված է 10-րդ դարում՝ Աղթամարա վանքի ճակատին:

Աղթամարի բարձրաքանդակների մեջ առհասարակ բավական շատ են առյուծի մոտիվներով կերտված տեսարանները, մանավանդ շատ տեղ է հատկացված այն պայքարին, որ մարդը ժամանակին մղել է այդ գազանի դեմ:

Սակայն միշտ չէ, որ հանդուգն է պատկերված այդ գազանը: Ահա մի այլ տեղ առյուծները խոնարհությամբ ու քծնանքով լիզում են Դանիել Մարգարեի ոտքերը, մի տեսարան, որ ջատագովումն է քրիստոնեական վարդապետության:

Այս ամենը չի՞ խոսում այն մասին, որ հնում առյուծներ են եղել նաև Վասպուրականում:

Միջնադարյան հայ մանրանկարչությունից ցանկանում ենք լրացուցիչ կերպով մեջ բերել հետևյալ օրինակները:

Թե որքան մեծարված կենդանի է եղել առյուծը հնում, երևում է նաև նրանից, որ չորս ավետարանիչներից մեկի՝ Մարկոսի խորհրդանիշը առյուծն է համարվել: Ահա Մշո ս. Կարապետ վանքի մագաղաթյա ավետարաններից մեկի հենց կազմին, արծաթի վրա, առյուծ է փորագրված, և դա նշանակում է, որ այդ գրքում տեղ ունի նաև Մարկոս ավետարանիչի գրվածքը: Հենց առյուծի քանդակի տակ փորագրված է՝ Մարկոս, իսկ Մարկոսի ավետարանը (թերթ 107) սկսվում է իրար դեմ կանգնած մարդ և առյուծ պատկերող զարդատառով: Ոսկեզրված այդ առյուծը նստած է և վեհորեն բարձր է պահել երկար բաշով իր փառավոր գլուխը: Նույն գրքի հակառակ երեսի կազմի վրա նույնպես արծաթից փորագրված առյուծը արդեն կանգնած է և, մի թաթը վեր բարձրացրած, իրեն հատուկ համարձակությամբ նայում է առաջ:

Մատենադարանում պահվող ձեռագիր ավետարաններից մեկի լուսանցքում ևս առյուծ է նկարված՝ կենաց ծառի հետ միասին (նկարն արված է Եղվարդում, 1818 թվականին): Մի այլ նկարում, որն արված է Սաղմոսավանքում 1320 թվականին, Աստվածատուր գրչի ձեռքով, զույգ առյուծները իրենց գլուխների վրա պահում են կենաց ծառը:

Առհասարակ անթիվ, անհաշիվ են առյուծների նկարները Մատենադարանի ձեռագրերում: Ահա մի տեղ օձակերպ երկու գազաններ, որոնք երկար պարանոցներ ունեն, երախներն առաջ են մեկնել և ատամներով կարծես բռնել են լուռ ու խաղաղ առաջ նայող առյուծի գլխի մաշկից: Այստեղ առյուծը նախահարձակ չէ և պատկերված է «մեծահոգի» բնավորությամբ: Նույն գրքում մատակ առյուծների հանդարտ և «բարի» երեք դեմքեր կան նկարված՝ ոսկու, կանաչի, կարմրի և այլ գույների ներդաշնակությամբ:

Մատենադարանում պահվող ձեռագրերում առյուծը, իր բնական կերպարանքից բացի, տրված է նաև ֆանտաստիկ ձևով և կոմբինացված այլ կենդանիների հետ: Այսպես, 1820 թվականին Հովհաննես գրչի ձեռքով գրված մի գրքում առյուծը թռչնագլուխ պոչ ունի և առհասարակ խիստ ոճավորված է, հետևապես՝ բավական հեռացած իր բնական տեսքից (Մատենադարան, ձեռագիր 7451, թերթ 270 ա): Մի այլ նկարում, որը արված է 1604 թվականին վանեցի Զաքարի ձեռքով գրված ավետարանում, առյուծը պատկերված է աղջկա (թե տղամարդու) թագակիր գլխով, որով հավանաբար նկարիչը ցանկացել է արտահայտել այդ կենդանու գազանների թագավոր լինելը: Նման աղավաղման, բայց և մեծարանքի են արժանացել առյուծները բազմաթիվ այլ ձեռագրերում ևս:

Այս ամենի եզրակացությունն այն է, որ այդ կենդանին կար մեր երկրում, ահեղ էր և, միևնույն ժամանակ, մեծարված:



## ԱՆԴՐԱՆԻԿ ՏԵՐՏԵՐՅԱՆ

●●●

Հասուն արտերը ծփում են խաղաղ,
Կակաչներն էլի խարույկ են դառել,
Այս ինչ խայտանք է մտել իմ հոգին,
Ոսկե ջահեր են հասկերը վառել:

Արտերից եկող բույրը ցորենի
Ինձ երանության ափերն է տանում,
Ալեկոծվում են պատկերներ ծանոթ,
Իմ մեջ հեռավոր հուշն է արթնանում:

Լաջվարդ երկնքից արտույտն է կախվել,
Կանչերն են թափվում արտերի վրա,
Ես հասկանում եմ արտույտի լեզուն,
Ինձ հարազատ է հրճվանքը նրա:

Հասուն արտերը ծփում են էլի,
Ջուլվել է նրանց արևի ոսկին,
Ինձնից պոկվել է մի տաք մեղեդի
Ու մերվել նրանց ծփանքի հոսքին:

## Դաղձը բուրում է

Դաղձի բուրմունք է գալիս ձորերից,
Արծաթ է փռում գետակն իր ափին,
Արցունքի կաթիլ մանուշակների
Աղոթքն է մերվել ջրերի ծափին:

Մաղկաթերթերը թռչող պեծեր են,
Կապույտ մշուշում գույներն են ցոլում,
Խնձորի ծառը պիտի հրդեհվի՝
Բոցերից կարված ճերմակ իր շորում:

Գույն-գույն ցոլքեր են հովերը տանում,
Այնքան մաքուր է ջուրը աղբյուրի,
Թվում է՝ խորունկ կարոտի ցավից
Լուռ արտասվել է այնտեղ մի հուրի:

Մաղկաբոցերից ժայռերն են շիկնել,
Ու շշուկներն են ծփծփում վայրի,
Մասրենու ճյուղին հանկարծ չդիպչես,
Ջեռքիդ մատները ծաղիկը կայրի:

Շաղոտ կածանին խոտերն են պառկել,
Արևի շուրթից թափվում է ոսկի,
Այս պատկերները ինչպե՞ս նկարեմ,
Տկար են, տկար բառերն իմ խոսքի:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# « ՁԵԶՊԵՍՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ... »

**ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

19-րդ դարի վերջերի և 20-րդ դարի սկզբների հայ ազգային ազատագրական շարժման կարկառուն ներկայացուցիչներից է հնչակյան Փարամազը: Ծնվել է 1863 թ. Մեղրի ավանում, որտեղ էլ ստացել է սկզբնական կրթությունը, ապա 1878 թ. աշնանը ընդունվում է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը, սովորում մինչև 1883 թ. վերջը և արտաքսվում 1883 թ. վերջին ուսուցչական ժողովի կողմից՝ ուսանողական խլրտումներին մասնակցելու պատճառով:

1884 թ. սկզբներին Փարամազը ուսուցիչ էր Հին Նախիջևանի դպրոցում: Այստեղ նա հանդիպումներ է ունենում քաղաքի երիտասարդության հետ, ըստ Ս. Գուլյանի վկայության՝ երիտասարդները նրան լսում էին ագահությամբ, Փարամազը «համակ բոց, կրակ էր, նա բոլորի սիրտը իր հետ ուներ»: Նախիջևանից Փարամազը տեղափոխվում է Ջահուկ (Ճահուկ-Ջահրի) գյուղը, ապա՝ Արդաբիլ քաղաքը: 1896 թ. նա Սալմաստի շրջանում էր, որի 24 հայկական գյուղերում ապրում էին ավելի քան 9 հազար հայեր: Նույն թվականին Սալմաստից իր աղջկան ուղարկած նկարի վրա Փարամազը գրել է. «Աղջիկս, Իսկուհի ջան, առ այս պատկերը, հիշիր հորդ և գնա նրա ճանապարհով, որը թեև փշոտ, բայց դեպի երջանկության ասպարեզն է տանում»: Սալմաստում Փարամազը լուրջ աշխատանք է տանում բնակչության (հատկապես երիտասարդության) շրջանում:

Հայտնի է, որ 1896 թ. Վանի բնակիչները թուրքական սրից ազատվելու նպատակով անցան ինքնապաշտպանության, որից հետո հարյուրավոր երիտասարդներ բռնեցին Պարսկաստանի ճանապարհը և ընկան կռվում՝ Խանասորի դաշտում, Գարահիսար լեռան մոտ ու Զուխում: 1897 թ. վերջին Փարամազը իր խմբով անցավ Վան: Թուրքական իշխանությունները իմացան նրա ժամանման մասին և նրանց հաջողվեց ձերբակալել Փարամազին և նրա հետ եկածների մեծ մասին: Սկսվեցին նրա և իր ընկերների խոշտանգումները: 1898 թ. սկսվեց նրանց դատավարությունը: Ժամանակակիցներից մեկը, որը մասնակցել էր այդ դատավարությանը, գրում է, որ Փարամազը անխռով էր, ազդված չէր և արհամարհում էր սվինավոր ոստիկաններին, որոնք կանգնած էին իր մոտ: Փարամազը դատարանում արտասանեց իր հայտնի ճառը, որտեղ նշեց, որ օսմանյան Թուրքիայում արդարություն չկա, և թվեց այն սոսկալի փաստերը, որոնք կատարվել էին բալկանյան ժողովուրդների և հայերի նկատմամբ: Նշեց, որ 4 տարվա ընթացքում կոտորվեցին հարյուր հազարավոր հայեր, այրվեց 2500 գյուղ: Այդ բռնակալական երկրում, նշում է նա, գյուղացիները գտնվում են տնտեսական ծանր վիճակում, անթիվ ու ծանր են նրանց վրա դրված հարկերը, իսկ ինչ վերաբերում է բեդելին (զինվորագրության փոխարեն՝ հարկ), ապա այն հավաքվում է ոչ թե 21 տարեկան տղամարդկանցից, այլ ծնված օրից մինչև մահ: Այնուհետև նա ասում է,



**ՓԱՐԱՄԱԶ**

**ՄԱՏԹԵՎՈՍ ՍԱՐԳՍՅԱՆ—ՓԱՐԱՄԱԶՅԱՆ**

որ ոստիկանները և թուրքական աստիճանավորները կաշառակերներ են, այնտեղ «օրենքը պաշտոնյաների կամայականությունն է», իսկ «արդարությունը ձեր տաճկական բառարանում նշանակում է կաշառք»:

Սակայն ի՞նչ է հայ հեղափոխականների ցանկությունը ըստ Փարամազի. ստեղծել «ինքնավար Հայաստան մը», որտեղ ապրողները առանց ցեղի և դավանանքի խտրության «ապրին սիրով եղբայրաբար, ազատ՝ քաղաքական և տնտեսական ճնշումներից»:

Այնուհետև նա ճառի վերջում ասում է, որ երկրում պետք է լինի խոսքի, խղճի, մամուլի, ժողովների գումարման ազատություն, «կյանքի, ինչքի ու պատվի ազատություն», և քանի որ այս պահանջները չի ապահովում օսմանյան կառավարությունը, ուստի՝ հեղափոխականները պահանջում են **«Հայաստանի ազգաբնակչության բաժանումը օսմանյան պետությունից»:**

Վերջում նայելով դատարանի անդամներին, անվախ հայտարարում է, որ Հայաստանի գետերը դեռևս կարմրած են իր ժողովրդի արյունով, և այդ անմեղ ժողովրդի սպանությունը իրենք կազմակերպեցին: Թուրքական դատարանը նրան դատապարտեց մահվան, իսկ նրա հետ դատվածներից 6 հոգի ստացան 15-ական տարվա բանտարկություն: Դատավճիռը կարդալուց հետո Փարամազը իր վերջին խոսքում ասաց, որ «կախաղանների սյուները ազատության աշտարակներ են», և որ ինքն իր ընկերների հետ արհամարհում է «կախաղան և շղթա, մահ և տանջանք», այնուհետև ասում է, որ կախաղաններից կախված մարմինները նախատինք են թուրքական կարգերի համար:

Փարամազի և նրա ընկերներից ոմանց պատիժը ի կատար չի ածվում, քանի որ Վանի ռուսական փոխհյուպատոս Վլ. Մաևսկու միջնորդությամբ նրանց ուղարկում են Կովկաս, և շատ չանցած նրանք ազատվում են բանտից: 1902—1903 թթ. փոխարքա Գոլիցինի զեկուցագրի հիման վրա ցարական կառավարությունը սկսեց կենսագործել հայ եկեղեցական կալվածքների գրավման և դպրոցների փակման ծրագիրը: Հայ ժողովրդի մեջ եռաց մի անասելի ցասում, և նա պայքարի դուրս եկավ այդ անարդար որոշման կենսագործման դեմ: Շատ չանցած Փարամազը մի քանի երիտասարդների հետ կազմակերպեց Գոլիցինի ահաբեկումը, որի ժամանակ սպանվեցին երեք երիտասարդներ և վիրավորվեց փոխարքան: Երբ 1905 թ. սկսվեցին հայ-թաթարական անմիտ կոտորածները, Փարամազը այցելում էր և՛ հայերին, և՛ ադրբեջանցիներին, հորդորում նրանց վերջ տալ այդ ընդհարումներին, որոնք ցարական կառավարության և Թուրքիայից եկած լրտեսների կազմակերպած գործերն էին:

1908 թ. Թուրքիայում տեղի ունեցավ երիտթուրքերի կազմակերպած հեղաշրջումը, և վերջիններս իշխանության գլուխ անցան: Սկզբից նրանք հպատակ ազգերին շատ խոստումներ տվեցին, որոնք միայն խոստումներ էլ մնացին: Շատ չանցած Փարամազը ցանկացավ գնալ Կոստանդնուպոլիս և, քանի որ նա լսել էր կնոջ մահվան մասին, որոշեց այցելել Մեղրի: Տան մոտ հանդիպում է աղջկան, որը նրան չի ճանաչում, և միայն հարևաններն են հասկացնում Իսկուհուն, որ այդ միրուքավոր մարդը իր հայրն է: Մի քանի ժամ այնտեղ մնալուց հետո Փարամազը մեկընդմիշտ թողնում է հայրենի Մեղրին, տունն ու տեղը, որբացած երեխաներին և նորից մխրճվում պայքարի մեջ: 1909 թ. նա Կոստանդնուպոլսում էր, ուր թուրքական լրտեսները սկսում են գալու օրվանից նրան հետևել: Այդ օրերին Թուրքիայում տեղի է ունենում հնչակյան կուսակցության վեցերորդ համաժողովը: Փարամազը հանդես է գալիս մի կրակոտ ճառով, որի մեջ ասում է այն մասին, որ երիտթուրքերը ավելի վտանգավոր են, քան Աբդուլ Համիդը, և չպետք է հավատալ նրանց «մեղրածորան խոսքերին», որոնք նպատակ ունեն քնեցնել հայ հեղափոխական կուսակցություններին և տկարացնել նրանց ուժը:

Համաժողովից հետո նա 1910 թ. մեկնեց Արտաքազար, ապա՝ Տիգրանակերտ, որտեղ ժողովրդի հետ հանդիպումների ժամանակ քարոզում էր նախահարձակ չլինել թուրքերի և քրդերի նկատմամբ, սակայն եթե հարձակում լինի՝ անցնել ինքնապաշտպանության: Ապա այն միտքն է հայտնում, որ պետք է հասնել այն բանին, որ Թուրքիայում ապրող ժողովուրդների միջև բարեկամության խորացումը լինի «աղբյուր բոլոր երջանկության, երկրի մեծության»: Տիգրանակերտում իր ելույթներից մեկի ժամանակ նա

երիտթուրքերին համարեց «հայոց դահիճը», որոնք մի օր պետք է կազմակերպեն հայերի ջարդը, և ժողովրդին հասկացրեց՝ «արդ զինվեցեք և արթուն կացեք»: Տիգրանակերտում եղած ժամանակ տեղի ուժերով բեմադրվեցին «Սանդուխտ կույս», «Անմահ Ժիրայր» և Փարամազի «Քամու բերածը քամին կը տանի» պիեսը:

Տիգրանակերտից Փարամազը գնում է Սլիվան, Արղնմադեն, Մալաթիա, որտեղի հայերի համար կարդում է մի շարք դասախոսություններ: Մալաթիայում նա մնում է մեկ ամիս: 1912 թ. Վանում էր: Այդ այն ժամանակաշրջանն էր, երբ արդեն ասպարեզում էր հայկական հարցը: Ժամանակակիցները վկայում են, որ այդ հարցում նա հոռետես էր և գըտնում էր, որ դա «գառան հոտը գայլին վստահիլ կնշանակի», ապա գտնում էր, որ անհրաժեշտ է միավորել բոլոր ուժերը և ժողովրդին նախապատրաստել ինքնապաշտպանության:

Երբ Փարամազը գտնվում էր Վանում, Կոստանցայում բացվեց հնչակյան կուսակցության 7-րդ համաժողովը, որին ուղարկած զեկուցագրում Փարամազը նկարագրում է ժողովրդի ծանր վիճակը և նըշում, որ գավառներում երիտթուրքերի «զուլումը չափ ու սահման չունի», որ նըրանք «Հայաստանը հայ արյունով» են ողողելու:

1914 թ. մայիսի մեկին «Հնչակ»-ում լույս տեսավ Փարամազի վերջին հոդվածը՝ «Հայի պահանջը» վերնագրով, որի մեջ նշված էր, որ հեղաշրջումից հետո հայերը կարճ ժամանակ ոգևորություն ապրեցին, սակայն շատ շուտով հիասթափվեցին: Հայ հայդուկը իմանալով ընդունված սահմանադրության մասին, իջավ լեռներից, դեն նետեց զենքը և վերցրեց հողը մշակելու գործիքները, նըպատակադրվեց քանդված տունը վերաշինել, կյանքի հրճվանքը ճաշակել: Սակայն հայը շատ շուտով համոզվեց, որ այդ բռնակալական երկրում շատ բան չի փոխվել: Նրանք համոզվեցին, որ երիտթուրքերը ցանկանում են ազգերին ձուլել և ստեղծել մի ընդհանուր ազգ՝ «օսմանցի» անունով: Այնուհետև նա հաստատապես պնդում է, որ հայը օսմանյան հեղաշրջումից ոչինչ չստացավ: Ապա եզրակացնում է, որ հայը փոխանակ կաթիլ-կաթիլ մեռնելու և անհետանալու, պետք է անցնի ինքնապաշտպանության, որպեսզի չմեռնի:

1914 թ. հուլիսի 16-ին Կոստանդնուպոլսում սկսվեցին հնչակյանների բանտարկությունները: Տանից դուրս գալու ժամանակ բանտարկվեց նաև Փարամազը: Փարամազին և նրա ընկերներին մեղադրում էին, որ նրանք նպատակադրվել են ահաբեկումների միջոցով շարքից հանել երիտթուրքերի ղեկավարներից ոմանց: Երբ սկսվեցին պատերազմական գործողությունները, Ռուսաստանի դեմ երիտթուրքերի պատերազմական ատյանը դատավարությունը տարավ այնպես, ինչպես ինքն էր ցանկանում: Բանտից Փարամազին հաջողվում է պատուհարքին հասցնել իր թաշկինակը, որի վրա գրված էր. «Սթափվեցեք: Դիմեցեք ինքնապաշտպանության: Ջարդը մահ է գալիս հայերի գլխին»:

Ամիսներ տևող դատական պրոցեսից հետո, դատական ատյանը 20 հոգու դատապարտեց մահվան: Վճիռն իրագործվեց 1915 թ. հունիսի 2-ին, Կոստանդնուպոլսի Սուլթան Բայազետի հրապարակում: Իր վերջին խոսքում Փարամազը խիստ քննադատության ենթարկեց թուրքական կառավարությունների և հատկապես երիտթուրքերի տարած վայրագ քաղաքականությունը հայերի նկատմամբ և կախվելուց առաջ անվախ հայտարարեց. «Դուք մեր մարմինը միայն կրնաք ըսպանել, բայց մեր գաղափարները՝ սոցիալիզմը՝ ո՛չ»: Քսան կախաղանների միակ վկան մի հայ քահանա էր, որը վկայում է, որ նրանք «անվեհեր կերպով կը դիմագրավեին մահվան և կարհամարհեին զայն»:

Փարամազի գրչին են պատկանում մամուլում լույս տեսած մի շարք հոդվածներ և 3 պիես: Նա հանդես է եկել սկսած 1910 թ. Հայր Սիվա ստորագրությամբ «Հնչակ», «Կայծ», «Արևելք», «Վան-Տոսպ» և այլ պարբերականներում:

Ավարտենք. Փարամազը (Մատթևոս Սարգսյան-Փարամազյան, Ռոդոստոցի Համբարձում Գրիգորյան) հանդիսանում է 19-րդ դարի վերջին քառորդի և 20-րդ դարի սկզբի հայ ազգային-ազատագրական շարժման այն կարկառուն և անվեհեր գործիչներից մեկը, որը տասնամյակներ շարունակ թողեց իր տունն ու տեղը, ընտանիքը, իր ժողովրդի համար չխնայեց կյանքը, բանտում և կախաղան բարձրանալու պահին անգամ մնաց անվեհեր ու անընկճելի:

# Խնդիրներ



1. Երեք հին իմաստուններ վիճում էին, թե ով է իրենցից ամենաիմաստունը: Անցորդը լսեց վեճը և նրանց մի խնդիր առաջարկեց:

— Դուք տեսնո՞ւմ եք, ինձ մոտ հինգ թասակ կա. երեքը՝ սև, երկուսը սպիտակ: Փակեք ձեր աչքերը,— այս խոսքերի հետ նա ամեն մեկի գլխին դրեց մի-մի սև թասակ, իսկ սպիտակները պահեց տոպրակի մեջ:

— Հիմա կարող եք բացել ձեր աչքերը, և ով առաջինը ասի, թե ինչ գույնի թասակ է իր գլխին, նա էլ թող իրեն ամենագիտունը համարի:

Երկար նստեցին իմաստունները, նայեցին իրար: Վերջապես նրանցից ամենաիմաստունն ասաց.

— Իմ գլխին սև թասակ է:

Ինչպե՞ս իմացավ:

2. Ձեր ընկերներին առաջարկեք հետևյալը.

— Վերցրեք որևէ երկանիշ թիվ և թվանշանների տեղերը փոխելուց հետո մեծ թվից հանեք փոքրը և ինձ ասեք տարբերության թվանշաններից որևէ մեկը, իսկ ես ձեզ կասեմ մյուս թվանշանը:

3. Գրիր ցանկացած թիվ, որի մեջ մի թվանշան բաց է թողնված, և ես արագ կավելացնեմ այնպիսի թվանշան, որ ստացված թիվը անմնացորդ բաժանվի 9-ի:

4. Ո՞ր բարձի վրա է գնացքում քնելը ավելի հանգիստ:

5. Ի՞նչ եք կարծում, միանմա՞ն են խըշշում փշատերև և լայնատերև անտառները:

6. Ի՞նչ գույներից է ստացվում սպիտակը:





ՔՆԱՐԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

## Շունն ու կատուն այսօր

Մի ժամանակ
Շունն ու կատուն
Առավել վատ,
Քանց թշնամին
Հարձակվում էին
Իրար վրա
Ու անպատվում
Վրա-վրա:
Շունն ու կատուն
Հիմա էլ են
Իրար ատում,
Հիմա էլ են
Շուն ու կատու,
Բայց... քանի որ
Քաղաքակիրթ
Այս աշխարհում
Դերասան են
Նույն կրկեսում,
Հանդուրժում են
Իրար լռին,
Պաղ բարևով,
Առանց սվին:

## Գրիչն ու սուրը

Վիճեցին մի օր
Գրիչն ու սուրը.
— Ես եմ քեզ հաղթում,—
Հոխորտաց սուրը,—
Ես սուրն եմ հզոր,
Դու՝ փոքրիկ, անզոր.,
Ուզեմ՝ քեզ կանեմ
Ճիշտ հազար կտոր:
Գրիչը լսեց
Շողշողուն սրին
Ու ոչինչ չասաց
Գրիչը լռին,
Այլ հոժարակամ
Գրեց հրաման՝
«Զենքն ու պատյանը
Տանել թանգարան,
Թող նրանց մասին
Ամենքն իմանան,
Նայեն ու տեսնեն,
Որ մի ժամանակ
Սուրը կռվել է,
Տարել հաղթանակ»:





ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ԲՈՒՅՍԵՐԻ ԿՌԻՎԸ

Պարզվում է, որ բույսերն էլ են իրար հետ կռվում: Եվ գիտե՞ք ինչի համար: Ապրելու համար: Ես դա տեսել եմ իմ աչքով Վրաստանի Ծղալտուբո քաղաքում, որտեղ արևադարձային բազմաթիվ ու բազմատեսակ բույսեր են աճում:

Զարմանալի բան, երբ դիտում ես բնությունը, խորանում նրա երևույթների մեջ, հետաքրքիր եզրակացությունների ես հանգում, տեսնում, որ երբեմն բույսերն ունենում են ճիշտ այնպիսի հատկություն-

ներ, ինչպիսին մարդիկ: Մարդ կա, օրինակ, որի մասին ասում են. պորտաբույծ է, չի աշխատում, սիրում է ուրիշի հաշվին ապրել: Բնության մեջ էլ լինում են պորտաբույծ բույսեր, դրանք հողում արմատ չեն գցում, այլ ապրում են ուրիշ բույսերի հաշվին: Փաթաթվող և մագլցող բույսերն են դրանք՝ լիանաները: Ծղլտուրքոյի զբոսայգին շատ ընդարձակ է: Գնում ես, գնում ծառուղիներով, և կարծես վերջ չունի: Գլխավերևում ճյուղերն իրար են հյուսվել, և կանաչ կամարն այնքան խիտ է, որ արևի ճառագայթները հազվադեպ են ներթափանցում: Բայցահա ուշադրությունդ գրավում է բարձր, հաստաբուն մի ծառ ու նրան փաթաթված լիանան:

Հեռվից աչքի համար դուրեկան է: Ինչ խոսք՝ չիմացողի համար: Կարծես խաղողի մանրիկ տերևներ լինեն, որ գրկել են ծառաբունը գետնին մոտիկ, և աստիճանաբար սողում են բունն ի վեր՝ դեպի ճյուղերը: Բուսաբանը կամ նա, ով հարցրել ու իմացել է, անմիջապես կհասկանա, որ ծառի ու լիանայի միջև գոյության կռիվ է: Փորձիր պոկել, միայն այդ դեպքում կհասկանաս, թե ինչ է նշանակում մակաբույս: Լիանան իր կպչուն, մազանման արմատներով խրվել է կեղևի մեջ ու ծծում է հյութը: Ես շատ չարչարվեցի, որ գոնե ծառերից մեկը մաքրեմ, բայց՝ ապարդյուն: Լիանայի դեպի վեր ձգվող մի քանի բարակ շիվեր հազիվ կարողացա պոկել, այն էլ՝ ծառի կեղևի հետ միասին: Այնպե՞ս է կառչել, որ կարողանաս պոկել: Պորտաբույծ լիանան իր մազմզուկավոր «ճիրաններով» քամում է ծառի հյութը: Ասենք նաև, որ շատ էլ «հնարամիտ» է: Մեծ մասամբ ընտրում է ծառի հյուսիսային կողմը, որ ինքը ծծի ծառի ավիշը, իսկ արևը չկարողանա գոլորշիացնել իր խոնավությունը:

Նկատեցի, որ մի քանի ծառերի բները քերված են. ուրեմն այգու աշխատողները պայքարում են պորտաբույծ լիանայի դեմ: Մեկ-երկու փոքր շիվ, համենայնդեպս, մնացել էր: Դա ևս բավական է նոր հարձակման համար:

Ուշադիր շուրջս նայեցի: Ծառուղուց դուրս, թփուտների մեջ մի ծառ ուղղակի խեղդվում էր: Ամբողջ բունը, ճյուղերն էլ հետը փաթաթված էին մակաբույծ բույսով: Վերին ճյուղերի ծայրերն էին միայն ազատ՝ հատուկենտ տերևներով, բայց թե ինչ ծառ է՝ որոշել հնարավոր չէր: Ամեն ինչ պարզ էր. այդ ծառը դատապարտված էր չորանալու:

Հիմա դու կհարցնես, ասենք թե ծառը չորացավ, հապա լիանա՞ն:

Քանի որ նախօրոք ասել էի՝ լիանան հողում արմատ չի գցում, ուրեմն պարզ է, իրեն սնող օրգանիզմի հյութերը քամելուց հետո, ինքը ևս դատապարտված է ոչնչացման: Սակայն, մինչև իր չորանալը, աներևան ապրում է ուրիշի հաշվին: Տեսա մի ծառ, որ խեղդվող մարդու էր նման. ճյուղերը պարզել էր վեր, կարծես օգնություն էր խնդրում: Ծանր տպավորություն էր թողնում, ձեռքդ հասնում է, բայց փրկել չես կարող:

Լիանայի տարբեր տեսակներ կան: Դրանցից մեկը շատ գեղեցիկ, մորեգույն ծաղիկներ ունի: Նույն զբոսայգու մեկ այլ հատվածում հանդիպեցի եղևնու, որն արդեն չորացել էր, իսկ նրա ճյուղերից դեռ կախված էին գեղեցիկ մորեգույն ծաղիկների «ողկույզները»: Հասկանալի է, կարճ ժամանակ անց դրանք էլ էին չորանալու: Բայց և չես կարող չմտածել՝ այսքան գեղեցիկ և այսքան դաժա՞ն:

Գոյության պայքար. քանի-քանի տարատեսակներ ունի այդ պայքարը: Բնության «հնարամտությանը» ևս չափուսահման չկա: Լսեք զրույցի շարունակությունը ու կիմանաք, որ պորտաբույծ լիանան ամենակարող չէ:

Այդ նույն բուսաբանական այգում ես տեսա մեկ այլ ծառ՝ նվենի (էվկալիպտ), որը հայտնի է նաև պոմպածառ անունով: Երկրորդ անունը ստացել է նրա համար, որ մեծ քանակությամբ ջուր է գոլորշիացնում: Նվենու բազմաթիվ տեսակներ կան: Իմ տեսածը մերկացող նըվենին էր: Լիանան իր մազմզուկ ճանկերով կպչում է նվենու բնին, սողում բունըն ի վեր: Իսկ ծառի կեղևը ժամանակ առ ժամանակ շերտատվում է ու շըրտվում ծառաբնից հեռու, իր հետ տապալելով նաև պորտաբույծ լիանային:

Երկար դիտում էի բարձր, հզոր նվենու ծառը, որի բույնը առանց կեղևի էր, ողորկ, սպիտակ: Կանցնի ժամանակ, ծառը նոր կեղև կկապի, կծածկի մերկությունը, լիանան կկառչի նրանից, և ծառը նույն կերպ կպաշտպանվի նոր հարձակումներից:

Այսպես առաջ կգնա բնության հավերժական երթը. իսկ մենք կաթիլ առ կաթիլ խորանալով՝ կծանոթանանք նրա գաղտնիքներին:

ԼՅՈՒԴՄԻԼԱ ՈՒՎԱՐՈՎԱ

# ՎԱՍԻԼԻ

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը (Ջուղաշվիլի) ուներ երեք երեխա՝ Սվետլանան, Յակովը և Վասիլին։

Վասիլի Ջուղաշվիլի (Ստալին)։ Ստալինի որդին երկրորդ կնոջից՝ Նադեժդա Ալիլուևայից։ Ավարտել է միջնակարգ դպրոցը և օդաչուական ուսումնարանը։ Ավիացիայի գեներալ-լեյտենանտ։ Ժամանակակիցների վկայությամբ՝ հոր սիրելին։ Մահացել է և թաղվել Կազանում։

Հայրենական Մեծ պատերազմից երկու տարի առաջ ես սկսեցի աշխատել Մոսկվայի հատուկ դպրոցում։ Այն ժամանակ 19 տարեկան էի։ Հիշում եմ իմ առաջին դասը։ Ինձ դասարան առաջնորդեց դըպրոցի տնօրենը՝ բծախնդիր մի մարդ, այն տարիներին շատ տարածված կասկածամիտ դեմագոգների ցեղից։

Դեռ ուսուցչանոցում նա ինձ տվեց դասամատյանը, որտեղ գրված էին աշակերտների անուն ազգանունները։ Բայց վերջում ազգանվան փոխարեն գրված էր լոկ մի բառ՝ «Վասիլի»։

— Գիտե՞ք դա ով է,— հարցրեց նա ինձ՝ աչքերը կկոցելով և ծակող հայացքով վրաս նայեց. դա ընկեր Ստալինի որդին է։ Հասկանո՞ւմ եք։ Ընկեր Ստալինի որդին։ Նա մի րոպե լռեց, որպեսզի իր ասելիքը ավելի ազդեցիկ լինի և շարունակեց.— Երբե՛ք, ոչ-ոքի, ոչ մի առիթով չասեք, որ ընկեր Ստալինի որդին սովորում է այս դպրոցում և պահպանեք դասամատյանը։ Այն կարող է ընկնել թըշնամու ձեռքը։ Թշնամին հավանաբար փորձում է ընկեր Ստալինի մասին տեղեկություններ հավաքել և նրան շատ կհետաքրքրի, թե որտեղ կարելի է գտնել ընկեր Ստալինի որդուն։ Եվ էլի մի բան,— նա վեր բարձրացրեց կարկինի պես իր ցուցամատը,— դուք կարող եք դաս հարցնել ընկեր Ստալինի որդուն, կարող եք նրան գրատախտակի մոտ կանչել, բայց երբեք նրան ոչ մի դիտողություն չանեք, ոչ մի՛։ Լավ հիշեք այդ։

Ես իմ աշակերտներից շատ քիչ էի մեծ և, խոստովանում եմ, շատ էի ուզում տեսնել մեր առաջնորդի որդուն, այն էլ ինչպես էի ուզում... Տնօրենը ներկայացրեց ինձ և հեռացավ, իսկ ես անմիջապես նստեցի։ Հանկարծ ինչ-որ բան դիպավ ճակատիս։ Չցավեց, բայց ես զգացի։ Հատակին, իմ սեղանի կողքին ընկավ թղթե աղավնի։

— Ո՞վ արեց,— հարցրեցի ես,— հուսով եմ, որ նա բացեիբաց կխոստովանի իր հանցանքը։

Պատուհանի մոտի նստարանից կանգնեց ամրակազմ մի տղա։ Նրա ամբարտավան շուրթերի գծագրության և դեպի քթարմատը ուղղված մռայլ հոնքերի մեջ ինչ-որ ծանոթ, շատ անգամներ տեսած բան երևաց։ Նրա ներքևի կոպերը թեթևակի բարձր էին, այդ պատճառով էլ հայացքը թվում էր մեղմ։ Գլուխը ետ գըցելով, նա հստակ հարցրեց.

— Կուզեի իմանալ, իսկ ի՞նչ հանցանք է եղել,— նա արտասանում էր բառերը հատ-հատ, կարծես կիսելով դրանք մեջտեղից։— Ուրեմն այսպես,— շարունակեց Վասիլին, (դե, իհարկե, այդ նա էր)— Ես եմ դա արել։ Ձեզ աղավնի ուղարկեցի որպես ողջույն։ Հասկացա՞ք։

— Հասկացա,— պատասխանեցի ես։

Բոլորից լավ ինձ վերաբերվում էր Թիմուր Ֆրունզեն[1] և էլի մի տղա, ես ըզգում էի, որ համակրում էր ինձ։ Դա Յուրա Խոլմոգորովն էր։ Նրա մասին ասում էին, որ առաջնակարգ սպորտսմեն է։ Նրա հայրը ինչ-որ դեսպանատան աշխատող էր, ապրում էր Փարիզում։

Ես աշխատում էի պահպանել այդ դպրոցի բոլոր ուսուցիչների համար խըստիվ սահմանված կանոնները՝ խուսափել որևէ աշակերտի հետ կողմնակի խոսակցություններից։ Բայց Թիմուրը, որ շատ անկաշկանդ էր և մարդամոտ, ինքը մոտեցավ ինձ, երբ ես դուրս էի գալիս

1 Միխայիլ Ֆրունզեի՝ (1885—1925) ականավոր խորհրդային զորավարի, պետական և կուսակցական գործչի որդին։



Վասիլին՝ Ստալինի կրտսեր և ամենասիրելի որդին, 1943 թ.

դպրոցից: Չեմ հիշում, թե ինչպես խոսք բացվեց Դյումայի և ընդհանրապես արկածային գրականության մասին: Հիշում եմ միայն, որ Թիմուրն ասաց. «Դա իմ ամենասիրած ժանրն է»: «Իմը նույնպես»,— խոստովանեցի ես:

— Գիտե՞ք ինչ, եկեք գրքեր փոխանակենք,— անսպասելի առաջարկեց նա:

Իսկ որոշ ժամանակ անց, մեծ դասամիջոցին, երբ ես գնում էի ուսուցչանոց, ինձ մոտեցավ Յուրան և կամաց, որպեսզի ոչ-ոք չլսի, խնդրեց.

— Եթե կարելի է, ես էլ կցանկանայի կարդալ ձեր գրքերը:

Այդպես մենք երեքով՝ Թիմուրը, Յուրան և ես, սկսեցինք գրքեր փոխանակել:

***

Վասիլին միշտ չէ, որ հաճախում էր դպրոց և երբեք չէր բացատրում իր չգալու պատճառները: Այսինքն՝ նրան ոչ-ոք չէր էլ հարցնում:

Չեմ հասկանում, թե ինչու Վասիլին ինձ չսիրեց: Գուցե պատճառը գերմաներեն լեզուն էր, որ նա տանել չէր կարողանում, և դրանից էլ նրա այդ ատելությունը ուղղվեց ինձ:

Չգիտեմ: Բայց նա երբեք տնային հանձնարարությունները չէր կատարում, մեծ մասամբ հրաժարվում էր պատասխանել, պատճառաբանելով միշտ նույնը. «Ես ինձ վատ եմ զգում»:

Եվ մի օր էլ ես նրան «անբավարար» նշանակեցի:

Դպրոցից դուրս գալուց ինչ-որ մեկը ձայն տվեց. «Անցեք տնօրենի մոտ»:

— Դուք ի՞նչ է,— սկսեց տնօրենը ցածրաձայն, համարյա անլսելի,— դուք, ի՞նչ է, խելագարվե՞լ եք:

— Բայց նա չցանկացավ պատասխանել:

— Ուրեմն՝ չէր ուզում:

— Իսկ ի՞նչ անել: Դա ի՞նչ օրինակ է մնացած բոլոր աշակերտների համար:

Տնօրենը հազաց, ինչպես միշտ, երբ պատրաստվում էր ինչ-որ կարևոր ու հանդիսավոր բան ասել:

— Ընկեր Ստալինի որդին բոլոր աշակերտների համար օրինակ է, անկախ այն բանից, թե նա ինչպես է սովորում, պատասխանո՞ւմ է նա դասը, թե՞ չի ցանկանում պատասխանել: Ընկեր Ստալինի որդին բացառություն է ընդհանուր կանոնից:

Այո, երևի դա այդպես է... Ես գնում էի փողոցով և լաց էի լինում: Ինչ-որ մեկը զգույշ բռնեց ձեռքս: Թիմուրն էր:

— Պետք չէ լաց լինել: Դուք, միևնույն է, նրան չեք վերափոխի: Նրան ընդհանրապես վերափոխել չի կարելի:

***

Ձմռան ավարտին աշակերտները մասնակցեցին դահուկային մրցավազքին:

Հաջորդ օրը դպրոցի ճանապարհին Թիմուրը հասավ ինձ և ուրախ ասաց.

— Յուրան առաջինն էր:— Թիմուրը օժտված էր բացառիկ հատկությունով՝ նա կարողանում էր ուրախանալ ուրիշի հաջողությունով:

Յուրա Ժդանովը երևի մեզ էր սպասում՝ կանգնած դպրոցի մուտքի մոտ, մորթե գլխարկը մի կողմ թեքված:

— Շնորհավորում եմ,— ասացի ես Յուրային,— ասում են՝ դու մրցավազքի հաղթողն ես:

— Հայրիկը ասում է, որ դա իմ նվերն է իրեն,— նկատեց Յուրան:— Նա եկել է մի քանի օր առաջ, նրան կանչել են

Մոսկվա:— Լռեց, հետո ավելացրեց.— Նա ինչ-որ տարօրինակ է դարձել: Ամբողջ ժամանակ ինչ-որ բան է մտածում...

Այդ րոպեին դպրոցին մոտեցան երկու մեքենա: Մեկից դուրս եկավ Վասիլին, իսկ մյուսում նստած էին երեք հոգի՝ Վասիլիի պահակախումբը: Գլխով բարևելով մեզ, Վասիլին դիմեց Յուրային.

— Դե ի՞նչ, հերոս, դեռ չե՞ս կարողանում ուշքի գալ քո հաղթանակից:

Վասիլին ժպտում էր, սակայն նրա ներքևի կոպերը կարծես սովորականից ավելի էին բարձրացել: Թերևս դա է պատճառը, որ նրա հայացքը թվում էր առավել ծակող:

Հանկարծ ես հասկացա. ախր նա նախանձում է Յուրային, իհարկե, նախանձում է: Հաջորդ օրը, դասամիջոցին, ես կանչեցի Յուրային և նրան տվեցի Կոնան Դոյլի ֆանտաստիկ ստեղծագործությունների հրաշալի հրատարակված ժողովածուն:

— Այստեղ ընդգրկված են «Կորուսյալ աշխարհ», «Երբ երկիրը ճչաց» և «Շերլոկ Հոլմսի վերջին արկածը»,— ասացի ես:

— Դա այն է, երբ նա կռվում էր պրոֆեսոր Մորիարտիի հե՞տ,— հարցրեց մեզ մոտեցած Թիմուրը,— ես կարդացել եմ, հրաշալի պատմվածք է:

— Ապրես,— ասաց ինչ-որ մեկը իմ թիկունքից:

Ես շրջվեցի: Վասիլին էր՝ ձեռքերը իր հրաշալի արդուկած շալվարի գրպաններում: Նա դպրոցում բոլորից լավ էր հագնվում, երևում է, որ սիրում և գնահատում էր լավ հագուստը, մեծ մասամբ հագնում էր արտասահմանյան սպորտային պիջակներ և կուրտկաներ:

— Սա ի՞նչ է, նվեր մրցավազքի հաղթողի՞ն,— հարցրեց Վասիլին, նայելով գրքին:

— Ոչ,— արագ պատասխանեց Թիմուրը, մենք գրքեր ենք փոխանակում եթերքով, տալիս ենք իրար այն, ինչ հետաքրքիր է թվում:

— Փոխանակո՞ւմ եք,— հարցրեց Վասիլին: Նրա դեմքի տարակուսած հայացքը փոխվեց քմծիծաղի: Ուրեմն՝ կազմակերպել եք փոխանակման կետ, այո՞, այդպե՞ս կհրամայեք հասկանալ:

Անցավ չորս օր: Դասերը վերջանալուց հետո ես տուն էի գնում: Վասիլիին բերող և տանող սև մեքենան արդեն կանգնած էր մուտքի մոտ: Նա նստեց եռնի նստատեղին, մեքենան տեղից պոկվեց, երկրորդը անմիջապես հետևեց նրան: Ես քայլում էի մայթով, նայելով ուղիղ առջևս: Հանկարծ Վասիլին իջեցրեց ապակին և կանչեց ինձ.

— Ապա մի կանգ առե՛ք...

Ես կանգնեցի: Մեքենաները նույնպես կանգ առան:

— Դուք էի՞ք տվել Խոլմոգորովին կարդալու Կոնան Դոյլը,— հարցրեց Վասիլին, նայելով ինչ-որ տեղ իմ գլխի վրայով:

— Այո,— ասացի ես:

Վասիլին ծիծաղեց: Ես հազվադեպ էի տեսնում նրան ծիծաղելիս, մեծ մասամբ նա իրեն պահում էր մռայլ ու զոռոզամիտ: Իսկ ահա նա այժմ ծիծաղում էր, և զգացվում էր, որ կեղծ չէր այդ ծիծաղը, այլ ամբողջ հոգով: Մինչև օրս, չնայած այդքան տարի է անցել, ես տեսնում եմ նրա ծիծաղով լեցուն դեմքը:

— Վախենում եմ,— ասաց նա, որ դուք, այլևս չեք տեսնի ձեր այդ հետաքրքիր գիրքը...

Սիրտս սեղմվեց:

Նույն օրվա երեկոյան ես գնացի դեղատուն մայրիկիս համար դեղ գնելու և հանդիպեցի այնտեղ ինձ ծանոթ մի ուսուցչի: Մենք միասին գնացինք Տվերյան բուլվարով: Հանկարծ նա ինձ կամաց հարցրեց.

— Ձեզ մոտ, կարծեմ, սովորում էր Յուրա Խոլմոգորո՞վը:

— Այո: Բայց ինչո՞ւ եք դուք նրա մասին խոսում անցյալ ժամանակով:

Այդ ժամանակ իմ զրուցակիցը շշնջաց ականջիս. «Նրա հորը...» և արեց այն տարիներին հանրահանաչ մի ժեստ՝ խաչեց երկու ձեռքի մատները:

Ես ցնցված էի: Ուրեմն Յուրայի հորը տարել էին... Իզուր չէր, որ Յուրային նա տարօրինակ էր թվացել, երևի օրեցօր սպասել էր, որ իրեն կբանտարկեն:

Իսկ հաջորդ օրը ինձ կանչեցին դպրոցի տնօրենի մոտ:

— Ենթադրում եմ, որ ձեր աշխատանքը մեր դպրոցում մոտենում է իր տրամաբանական ավարտին: Աշխատեք ձևակերպել ձեր հեռանալը ինչպես որ հարկն է:

— Լավ,— ասացի ես:

— Ես ձեզ զգուշացնում էի... Հազիվ թե կարելի է պատկերացնել. ուսուցչուհին իր աշակերտների հետ կազմակերպում է ինչ-որ մի փոխանակման կետ... Դասամատյանը չմոռանաք թողնել ուսուցչանոցում:



# ԱԿՎԱՐԻՈՒՄ

Սենյակային ակվարիումները լինում են երկու տեսակ՝ երկաթե հիմնակմախքով և ամբողջապես ապակյա: Խորհուրդ է տրվում ունենալ ուղղանկյուն քառանկյան ձև ունեցող ակվարիումներ՝ 132—200 լիտր տարողությամբ: Որպես բնահող օգտագործվում է գետային խոշոր կամ շինարարական ավազը: Նախքան այն փռելը պետք է լավ լվանալ, ապա եռացնել՝ ավազում եղած մակաբույծները վերացնելու նպատակով: Բնահողը պետք է փռել թեք հարթությամբ, դիմացի շերտը պետք է ունենա 2—3 սմ, իսկ ետևինը՝ 4—6 սմ հաստություն: Խորհուրդ չի տրվում ակվարիումում տեղավորել փոքր և մեծ խեցիներ, քարեր և այլն: Դրանք ժամանակի ընթացքում մամռակալում են և փչացնում ջուրը: Որպես ակվարիումային ջուր կարելի է օգտագործել գետային կամ ջրմուղի ջուրը: Գետային ջուրն օգտագործելիս անհրաժեշտ է տաքացնել՝ մանրէները ոչնչացնելու, իսկ ջրմուղի ջուրը պետք է թողնել 2—3 օր՝ քլորազրկելու համար: Հանքային և ճահճային ջուրը արգելվում է օգտագործել նրանց մեջ աղային և թթվային մեծ պարունակության պատճառով: Որպես ակվարիումային ջրային բույսեր օգտագործվում է խարան, ֆոնտինալիան, եղջերատերևուկը, բյուրեղատերևուկը: Թվարկված բոլոր բույսերն աճում են Արարատյան դաշտավայրի բոլոր բնական ջրային մակերեսներում: Սև ջրի, Այղր-լճի, Հրազդանի և լեռնային մի շարք ջրավազաններում: Սովորական սագիտարիան աճում է Ստեփանավանի, Կալինինոյի և Ղուկասյանի ջրամբարներում:

Լողացող և վերջրյա բույսերից Հայաստանի տարածքում աճում են սալվինիան, ջրոսպը, ռիչիան, ցեպերուսը և այլն: Սակայն վերջին շրջանում բնական ջրամբարների աղտոտվածության պատճառով այս բույսերը նախքան ակվարիում մտցնելը պետք է ախտահանել:

Խորհուրդ է տրվում ձկներին կերակրել կենդանի կերով՝ առավոտյան և երեկոյան (մոտիլով, անձրևորդով, ցիկլոպով, կորետրայով և այլն): Կենդանի կեր կարելի է հայթայթել բնական ջրամբարներից: Էնխիտրեուսներ կարելի է բազմացնել փայտե արկղիկում, որտեղ լցված է հող և հացի խմոր: Այդպիսի արկղիկը պետք է պահել 20—22 աստիճան ջերմություն ունեցող կիսամութ տեղում: Ինֆուզորիա բազմացնելու համար պետք է չորացրած հազարի (սալաթի) տերևներ փոշիացնել և լցնել ջրատար ամանի մեջ: Որոշ ժամանակից հետո կհայտնվեն ինֆուզորիաները:

Ակվարիումային ձկների մի շարք տեսակներ ապրում են նաև մեր հանրապետությունում: Սակայն նախապես պետք է իմանալ, որ միասին կարելի է պահել միայն հավասար մեծության ձկներ, որոնք ունեն միևնույն խնամքի պահանջ: Գոլյան, պլուրվան, մալյավկան, տինկան, դառնաձուկը և մեծբերանը պահանջում են սառը ջուր (12—18 աստիճան) և շատ թթվածին:

Տաք ջուր (18—25 աստիճան) և շատ թթվածին պահանջող ձկները հետևյալներն են՝ պտերոֆիլում, սկալյարե, ցիխլոզոմա, խերոս կանխիտո, սկարա և այլն:

Սառը ջուր և քիչ թթվածին են պահանջում Ոսկե և Արծաթե ծածանները, կարմրաթաղանթը, Ոսկե ձկների բոլոր տեսակները:

4—5 լիտր ջրում նախընտրելի է պահել 5—6 սմ երկարություն ունեցող ձկներ, իսկ էկզոտիկ ձկներին՝ 10 լիտր ջը-

րում: Այս ձկները իրենց լավ են զգում սենյակային ջերմաստիճանից մի քանի աստիճան բարձր ջրում: Միևնույն ակվարիումում չի կարելի պահել գիշատիչ և խաղաղասեր ձկներ: Օրինակ՝ միևնույն ակվարիումում ապրող աքլորիկը կարող է վնասել գուպին:

Ձկները ըստ բազմացման բաժանվում են երկու խմբի՝ կենդանածին և ձկնկիթ դնող:

Կենդանածին ձկների էգին պետք է առանձնացնել արուից, իսկ ձագերի ծնվելուց հետո առանձնացնել նաև էգին: Ձկնկիթ դնող ձկների արուն և էգը պետք է մնան իրար հետ այնքան ժամանակ, քանի դեռ էգը ձկնկիթ չի դրել: Այնուհետև պետք է էգին առանձնացնել, իսկ արուին առանձնացնել միայն այն ժամանակ, երբ նա արդեն ձկնկիթը պատել է սերմնահեղուկով: Անհրաժեշտ է պահել բազմապիսի ֆունկցիաներ կատարող ձկներ: Օրինակ՝ սանիտարը ուտում է կերի մնացորդները, չթողնելով որ դրանք փտեն և կեղտոտեն ջուրը:

Ակվարիումում ձկների կյանքի համար ստեղծված անբարենպաստ պայմանները, ինչպես նաև մի շարք մակաբույծներ կարող են դառնալ ձկների հիվանդության պատճառ:

Ջրի ջերմաստիճանի իջեցումը 5—8 աստիճանով կարող է ձկների մրսածության պատճառ դառնալ: Մրսածությունը կարելի է բուժել ջրի ջերմաստիճանի վերականգնման և հիվանդ ձկներին ցենիցիլին-էկմոլինի լուծույթով ախտահանելու միջոցով:

Ձկները հիվանդանում են նաև խիլոդոնելոզ, դակտիլոգիրոզ, սապրոլեգնիա և այլ հիվանդություններով: Սակայն ինչպես ոչ վարակիչ, այնպես էլ ինֆեկցիոն հիվանդությունների դեպքում պետք է դիմել բժշկի:

Ակվարիումում կարելի է պահել երկկենցաղներ՝ գորտեր, տրիտոններ, սակայն՝ միայն ակվարիումային: Որպեսզի երկկենցաղները հնարավորություն ունենան ջրից դուրս գալ, պետք է ակվարիումի մի մասում տեղադրել 10×15 չափսի պենոպլաստե կտոր: Ակվարիումում կարելի է պահել նաև նախակենդանիներ և խխունջներ: Նախակենդանիներից կարելի է պահել հողաթափիկ ինֆուզորիան, մտրակավորներ, արմատոտանիներ: Որպեսզի նախակենդանիները ակվարիումում իրենց լավ զգան, այնտեղ կարելի է տնկել նիտելլա, ռիչիա, փոքրիկ բշտկաբույս: Ակվարիումում կարելի է պահել նաև խխունջներ: Փորոտանի փափկամարմիններից ակվարիումում կարելի է պահել եղջերավոր կոճակ, ֆիզա և այլն:

Ակվարիումում չի կարելի պահել լըճախխունջին, որն ուտում է ակվարիումային բույսերը: Խխունջները կատարում են նաև սանիտարի դեր, կեղտից մաքրելով ակվարիումի ապակե պատերը: Ակվարիումում բույսերի կյանքն ապահովելու համար անհրաժեշտ է լուսավորություն: Վերևից լուսավորելու դեպքում լավ են աճում վերջրյա, լողացող բույսերը, իսկ կողքից լուսավորելու դեպքում՝ ստորջըրյա բույսերը: Ակվարիումը պարբերաբար պետք է հագեցնել թթվածնով, դրա համար գոյություն ունեն էլեկտրական օդամղիչներ: Պատանի բնասերները կարող են ինքնուրույն պատրաստել նաև ակվարիումի ապակիները ներսից մաքրելու խոզանակ, ցանցաթիեր: Տասը օրը մեկ անհրաժեշտ է լրացնել ակվարիումից գոլորշիացած ջուրը, հեռացնել դեղնած և փչացած տերևները, թելավոր ջրիմուռներից մաքրել պատերը, մաքրել հատակը՝ տարին երկու անգամ կատարել ընդհանուր մաքրում: Ջուրը պետք է պարունակի նաև յոդ, սակայն՝ չնչին քանակությամբ: Ակվարիումային ձկները լավ են կանխագուշակում մոտալուտ երկրաշարժը. ցույց են տալիս անհանգստության նշաններ, փորձում են կարծես դուրս թըռչել ջրից: Հետևեք այս խորհուրդներին, և ձեր ակվարիումը կլինի գեղեցիկ, մաքուր, իսկ ձկները՝ առողջ:

ԱՎԵՏԻՍ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ



## 25 ԷՋԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. Իմաստունն այսպես մտածեց.

— Ես տեսնում եմ երկու թասակ: Ենթադրենք, թե իմ գլխինը սպիտակ է, այն ժամանակ երկրորդ իմաստունը տեսնելով սպիտակ և սև թասակները պիտի այսպես դատի՝ «Եթե իմ գլխին էլ լիներ սպիտակ, ապա երրորդը անմիջապես գլխի կընկներ, որ իր գլխին սև թասակ է: Բայց նա լռում է, ուրեմն՝ իմ գլխին ոչ թե սպիտակ է, այլ սև»: Բայց քանի որ երկրորդն այդ բանը չի ասում, ուրեմն իմ գլխին նույնպես սև թասակ է:

2. Գաղտնիքը հետևյալն է. ամեն մի երկանիշ թվի և թվանշանների տեղը փոխած թվի տարբերությունը բաժանվում է 9-ի, իսկ 9-ի վրա բաժանվող երկանիշ թվի թվանշանների գումարը նույնպես բաժանվում է 9-ի:

Ասենք, նրանք մտքում պահել են 92, թվանշանները տեղափոխելով կստանան 29, 92—29=63, եթե քեզ հայտնեն, ասենք 6-ը, դու կարող ես մյուս 3-ը ստանալ 9-ից 6 հանելով:

3. Գաղտնիքը հետևյալն է. 9-ի վրա բաժանվում են բոլոր այն թվերը, որոնց թվանշանների գումարը նույնպես բաժանվում է 9-ի:

4. Անիվների թխթխկոցը, գնացքի աղմուկը լսվում է ուղևորի ականջում, որը ոմանց քուն է բերում, իսկ մյուսներին՝ խանգարում: Աղմուկը բավական խլացնում է օդով լցված բարձը, որը ձայնամեկուսիչ դեր է կատարում:

5. Փշատերև անտառում քամին սվսըվոց է հանում, իսկ լայնատերևում՝ աղմուկ: Գարնանը, երբ տերևները նոր են ու փափուկ, աղմուկը հաճելի փափկություն ունի, իսկ աշնանը, երբ տերևները կոշտանում են, աղմուկը կոշտ ու կոպիտ է հնչում:

6. Միաժամանակ յոթ գույների խառնուրդից ստացվում է սպիտակ գույն:

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 9•89



Հանձնված է արտադրության 30.06.89 թ.: Ստորագրված է տպագրության 03.09.89 թ.: ՎՖ 02334: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61132: Պատվեր՝ 911: Գինը՝ 15 կոպեկ:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 30.06.89 г. Подписано к печати 03.09.89 г. Формат 70×100 1/16 ВФ 02334. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61132. Заказ 911. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе. 2.

Շապիկի 1-ին էջին՝ ԱՐՇԻԼ ԳՈՐԿԻ (ՈՍՏԱՆԻԿ ԱԴՈՅԱՆ) «ՆԱՏՅՈՐՄՈՐՏ»



Գործ՝ ՊԵՏՐՈՍ ԿՈՆՏՈՒՐԱՋՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ.

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա.:

ԻՆԴԵՔՍ՝ 77808 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.